Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 21 (99)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

21-ԱՀ

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 21 (99)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---



# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՂԹՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԵԾ ՏՈՆԸ

(Նյութեր, զեկուցումների և զրույցների համար)

### *ԵՐԿՈՒ ԱՇԽԱՐՀ, ԵՐԿՈՒ ՍԻՍՏԵՄ*

*Քսաներեք տարի է անցել այն ժամանակից, որ Սովետների պետության ստեղծումով մեր հաղթական ռևոլյուցիան նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիան դուրս կորզեց մեր երկիրը կապիտալիզմի սիստեմից։ Աշխարհը բաժանվեց երկու մասի, երկու սիստեմի— երկրագնդի մեկ վեցերորդ մասում հաստատված սոցիալիզմի աշխարհ և երկրագնդի հինգ վեցերորդում պահպանված կապիտալիզմի աշխարհ։*

*Ինչպիսի՞ հանրագումարներով ենք հասել*

այդ երկու աշխարհները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի քառասներեքերորդ տարեդարձին։

Կապիտալիստական աշխարհը բռնկված է երկրորդ իմպերիալիստական պատերազմի չարագուշակ բոցով, որն ավելի ու ավելի լայն կերպով է տարածվում։ Նա ընդգրկել է Ասիան, Եվրոպան, Աֆրիկան և սպառնում է ընդգրկել նորանոր երկրներ ու նոր աշխարհամասեր։ Հարյուր հազարավոր մարդիկ են սպանված։ Քաղաքները փլատակների են վերածվում։ Միլիոնավոր մարդիկ զրկվել են տնուտեղից և թափառում են ճանապարհներին՝ քաղցած, մերկ, ապաստարան փնտրելով պատերազմի սարսափներից։ Բայց պատերազմի փոթորիկը ամեն օր, ամեն ժամ շարունակում է ավերածություն, տառապանք ու մահ սփռել։ Նրանից փախչելու համարյա տեղ չկա։ Թիկունքը ֆրոնտ է դարձել։ Պատերազմի աղետներն ամենից ավելի ծանր կերպով աշխատավորներն են զգում։ Սովի օրապարենը, որին դատապարտված են նրանք Եվրոպայի համարյա բոլոր երկրներում, անտերության, ավերումների, բլոկադաների պատճառով, սպառնում է էլ ավելի նվազել։ Մոտալուտ հեռանկարը ձմեռվա սովն է։ Եվ պատերազմի սարսափները կլրացվեն սովի տանջանքներով ու նրան ընթակից համաճարակներով։



Այս է կապիտալիստական Եվրոպայի ներկան և ամենամոտիկ ապագան։ Պատահակա՞ն է արդյոք այդ։ Ո՛չ։ Կապիտալիզմի գոյությունն ինքն է ծնում այդ բոլոր արյունոտ սարսափները։

Մարդկության մեծ հանճարներ Լենինը և Ստալինը այս պատերազմից շատ առաջ կանխագուշակել են նրա գալուստը։ «Հոկտեմբերյան ռևոլյուցիայի քառամյա տարեդարձի առթիվ» հոդվածում Վ. Ի. Լենինը գրել է.

«Այն հարցը, որ վերաբերում է իմպերիալիստական պատերազմներին, ֆինանսական կապիտալի ամբողջ աշխարհում այժմ գերիշխող միջազգային այն քաղաքականությանը, որն անխուսափելիորեն ծնում է նոր իմպերիալիստական պատերազմներ, անխուսափելիորեն ծնում է ազգային ճնշման, կողոպուտի, ավազակության, թույլ, հետամնաց, մանր ազգություններին՝ մի խումբ «առաջավոր» պետությունների կողմից խեղդելու չլսված ուժեղացում,— այս հարցը 1914 թվականից երկրագնդի բոլոր երկրների ամբողջ քաղաքականության անկյունաքարն է դարձել։ Այդ՝ տասնյակ միլիոնավոր մարդկանց կյանքի ու մահվան հարցն է։ Այդ՝ այն հարցն է, թե արդյոք հաջորդ,

մեր աչքի առաջ բուրժուազիայի կողմից նախապատրաստվող, մեր աչքի առաջ կապիտալիզմից բխող իմպերիալիստական պատերազմում կոտորվելո՞ւ է 20 միլիոն մարդ (10 միլիոն սպանվածների փոխարեն 1914—1918 թ. թ. պատերազմում, նրան լրացնող «մանր» պատերազմների հետ միասին, որոնք մինչև այժմ էլ դեռ չեն վերջացել), արդյոք այդ անխուսափելի (եթե կապիտալիզմը պահպանվի) գալիք պատերազմում կհաշմանդամանա՞ն 60 միլիոն (1914—1918 թ. թ. հաշմանդամացած 30 միլիոնի փոխարեն)»: (Լենին, Երկ. XXVII հ., էջ 36, հայ. հրատ.):

Ընկեր Ստալինը 1934 թվին ՀամԿ(բ)Պ XVII համագումարում արած իր հաշվետու զեկուցման մեջ, խոսելով կապիտալիստական երկրների միջև և այդ երկրների ներսում ձգձգվող տնտեսական ճգնաժամի հետևանքով ստեղծված հակասությունների սրման մասին, մատնանշել է, որ այդ հակասությունները «...հող են ստեղծել ռազմական ընդհարումների համար և հերթի են դրել պատերազմը, որպես աշխարհի և ազդեցության ոլորտների նոր վերաբաժանման միջոց...»:

Նորից, ինչպես և առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ, իմպերիա-



լիստները հավատացնում են, որ այս վերջին պատերազմն է, որ նրա հաղթական ավարտումից հետո գալու է բարորության ժամանակը: Սակայն եթե այն ժամանակ բուրժուազիային հաջողվեց իրեն նվիրված սոցիալ-դեմոկրատական պարագլուխների ոգնությամբ խաբել բանվոր դասակարգի մի զգալի մասին, ապա այժմ այդ բանը ոչ ոքի չի հաջողվի: Աշխատավոր մասսաներն այս ժամանակամիջոցում շատ զրկանքներ են տեսել և շատ բան են հասկացել: Նրանք հիշում են, որ հաշտություն կնքելուց հետո, երբ զինվորները տուն եկան և երազում էին խաղաղ աշխատանքի անցնել, նրանց մեծամասնությունը ֆաբրիկաների ու գործարանների դռներից դուրս մնաց:

Կապիտալիստական Եվրոպան առաջին իմպերիալիստական պատերազմից հետո սկսեց լիզել պատերազմի նրան հասցրած վերքերը և ամերիկյան ոսկու օգնությամբ վերականգնել իր տնտեսությունը: Արդյունաբերությունը վերականգնելու պրոցեսում բուրժուազիան ամենադաժան ռացիոնալիզացիա էր կիրառում: Բանվոր դասակարգի շահագործումն է՛լ ավելի սաստկացավ, աշխատանքային օրը երկարացվեց, աշխատավարձն իջեցվեց, հարյուր հազարավոր

մարդիկ գործազրկության դատապարտվեցին: Կապիտալիստական տնտեսությունը վերականգնելու ծանրությունը փոխադրվեց բանվոր դասակարգի ուսերի վրա: Բայց հազիվ կարողացած 1928–1929 թվականների մոտերքը արդյունաբերական արտադրությունը նախապատերազմական մակարդակին հասցնել, կապիտալիստական աշխարհը հիմքից ցնցվեց 1929 թվի տնտեսական ճգնաժամից: Ճգնաժամի ավելի քան երեք տարվա ավերիչ ազդեցությունը մի քանի տասնամյակով հետ շպրտեց կապիտալիստական երկրները: Այն ժամանակ, երբ ՍՍՌՄ-ում արդյունաբերական արտադրանքի ծավալն, անշեղորեն ավելանալով, 1933 թվականին հասավ 1929 թվի համեմատությամբ 200%-ի, ԱՄՆ-ում այդ նույն ժամանակամիջոցում արդյունաբերական արտադրանքի ծավալն իջավ մինչև 65%, Անգլիայում— 86%, Գերմանիայում— 66%, Ֆրանսիայում— 77%: Կապիտալիստական ոչ մի երկիր զերծ չմնաց ճգնաժամից:

Գյուղում ճգնաժամն առաջ բերեց միլիոնավոր գյուղացիական տնտեսությունների քայքայում: Նրանց գույքը աճուրդով ծախում էին: Գործ գտնելու համար գյուղացիները քաղաք էին գնում: Գործազուրկների պահեստի բանակն աճեց, հասավ 30 միլ.



մարդու: Բայց նրանք էլ, ովքեր ավելի բախտավոր գտնվեցին, ովքեր ֆաբրիկաների ու գործարանների դռներից դուրս չմնացին, միայն կիսաքաղց գոյություն կարող էին ունենալ: Նրանց աշխատավարձն է՛լ ավելի իջեցվեց, աշխատանքային օրն է՛լ ավելի երկարացվեց:

Բոլոր տնտեսական ու քաղաքական հակասություններն ինչպես առանձին երկրների ներսում, այնպես էլ կապիտալիստական երկրների միջև ամենասաստիկ չափերով սրվեցին: Ճգնաժամը շարունակվեց մինչև 1933 թ. վերջը: Հետո կապիտալիստական տնտեսությունն սկսեց կամաց-կամաց դուրս գալ ճգնաժամից: 1937 թվին հասնելով նախաճգնաժամային մակարդակին, արդյունաբերական արտադրանքը 1937 թ. երկրորդ կեսին կրկին սկսեց ընկնել: Վրա հասավ տնտեսական նոր ճգնաժամը:

ՀամԿ(բ)Պ XVIII համագումարում արած իր հաշվետու զեկուցման մեջ ընկեր Ստալինը, 1937 թվի ճգնաժամի մասին խոսելով, ընդգծեց. «Նոր տնտեսական ճգնաժամը պետք է հասցներ և իրոք հասցնում է իմպերիալիստական պայքարի հետագա սրմանը: Խոսքն արդեն չի վերաբերում շուկաներում տեղի ունեցող մրցությանը, առևտրական պատերազմին, դեմպինգին:

Պայքարի այդ միջոցներն արդեն վաղուց անբավարար են համարված։ Խոսքն այժմ վերաբերում է աշխարհի, ազդեցության ոլորտների, գաղութների նոր վերաբաժանմանը ռազմական գործողությունների միջոցով»։

Այս հանճարեղ կանխատեսությունը շուտով իրականացավ։ Ի լրումն պատերազմի հեռավոր-արևելյան օջախի, ծագեց պատերազմի երկրորդ օջախը — Եվրոպայում։ Երկրագնդի բնակչության կեսից ավելին արդեն պատերազմի մեջ է քաշված։ Մի՞թե կապիտալիստական աշխարհի այդ ամբողջ ճանապարհն առաջին իմպերիալիստական պատերազմից մինչև երկրորդը ցույց չտվեց միջազգային բանվոր դասակարգին, որ կապիտալիզմն արդեն վաղուց է պրոգրեսիվ ֆակտորից դարձել մարդկության զարգացումը կաշկանդող և այլանդակող կապանքներ, որ կապիտալիզմը չի կարող նոր արյունոտ սպանդներ չծնել։

Երկրորդ տարին է տևում պատերազմը Եվրոպայում, և չորրորդ տարին — Ասիայում։ Տենդորեն պատերազմի են պատրաստվում Հյուսիս-Ամերիկյան Միացյալ Նահանգները։ Բոլոր պատերազմող երկրներում բուրժուազիան պատերազմն օգտագործեց բանվոր դասակարգի վրա հարձակվելու



համար։ Բանվորները կորցրին նույնիսկ այն տարրական իրավունքները, որոնց համար նրանք տասնյակ տարիներ պայքարել էին։ Մի շարք երկրներում բանվորական շարժումը ջախջախված է, բանվորական կազմակերպությունները ցրված են, պրոֆմիությունները լիկվիդացիայի են ենթարկված։

Պատերազմը տասնապատկել է կապիտալիստական երկրների աշխատավորության զրկանքները, կարիքն ու տառապանքները։ Պատերազմական հրեշավոր ծախսերն ամբողջ ծանրությամբ ընկնում են բանվոր դասակարգի ուսերի վրա։ Ֆրանսիական պաշտոնական աղբյուրների համաձայն պատերազմից Ֆրանսիայի կրած վնասը 100 միլիարդ ֆրանկ է գնահատվում։ Ճապոնիան արդեն 19 միլիարդ իեն է ծախսել չին ժողովրդի դեմ մղած պատերազմում։ Այդ գումարի վիթխարիությունը պատկերացնելու համար բավական է մատնանշել, որ 1904—1905 թվականների ռուս-ճապոնական պատերազմը Ճապոնիայի վրա 1,5 միլիարդ իեն նստեց։ Անգլիայի պատերազմական ծախսերը հավասար են օրական 10 միլիոն ֆունտ ստերլինգի։ Պատերազմի համար միջոցներ որոնելով, բուրժուազիան խիստ ավելացրել է հարկային դրույքները, անուղղակի հարկեր է դրել

լայն սպառման առարկաների վրա, պակասեցրել է աշխատավարձը և երկարացրել է աշխատանքային օրը։ 12—14 ժամյա աշխատանքային օրը սովորական երևույթ է դարձել կապիտալիստական երկրներում, կիրակի օրերը վերացված են։ Չնայած պատերազմական հանգամանքներին, կապիտալիզմի երկրներում գործազուրկների հսկայական բանակ կա։ Անգլիայում մոտ 900 հազար գործազուրկ կա. Ֆրանսիայում նրանց թիվը հասնում է 1.200 հազար հոգու։ Ֆրանսիական զորացրվող բանակն անընդհատ ավելացնում է այդ թիվը։ Ֆրանսիան, որ բաժանված է երկու մասի— օկուպացիայի-ենթարկված և չենթարկված,— ջախջախված, բլոկադայի ենթարկված, քայքայված արդյունաբերությամբ, ի վիճակի չէ ոչ գործազուրկների այդ բանակը կերակրելու և ոչ էլ նրան աշխատանք տալու։ Բելգիայում մոտ կես միլիոն գործազուրկներ կան։ Նույն պատկերն է կապիտալիստական Եվրոպայի համարյա բոլոր երկրներում։ Նույնիսկ ԱՄՆ-ում, չնայած պատերազմի տենդային պատրաստությանը, մոտ 10 միլիոն գործազուրկ կա։

Եթե կապիտալիստական երկրների ժողովրդական մասսաներին պատերազմը մահ, սով, հուսահատություն է բերում, ապա



բուրժուազիային նա հսկայական շահույթ է բերում։ Այսպես, 246 Հոլանդական ընկերություններ 1939 թվին 26,1% ավելի շահույթ են ստացել, քան 1938 թվականին։ Երկաթահանք հանող շվեդական երեք խոշորագույն ֆերմաներ 1939 թվին 94.140 հազար կրոն շահույթ են ստացել։ Կանադական «Ալյումինիում լիմիտեդ»-ը 1939 թվին 15.800 հազար դոլլար զուտ շահույթ է ստացել—4.800 հազար դոլլար ավելի քան 1938 թվին։ Ամերիկյան արդյունաբերական 400 հիմնական կորպորացիաների ընթացիկ տարվա առաջին կիսամյակի շահույթը կազմել է 2.280 միլիոն դոլլար —59%-ով ավելի քան անցյալ տարվա նույն այդ ժամանակամիջոցում։ Ըստ ճապոնական մամուլի տվյալների, ճապոնական 6 առաջատար բանկեր այս տարվա առաջին կեսում 34.188 հազար իեն շահույթ են ստացել— այսինքն 4.071 հազար իեն ավելի, քան անցյալ տարվա այդ նույն ժամանակամիջոցում։ Ահա թե ով էր ուզում պատերազմը, ահա՛ թե նա ում է հարկավոր։

Կապիտալիստական երկրների բանվորների, գյուղացիների համար, ինտելիգենցիայի լայն խավերի համար այժմ ավելի քան երբևիցե պարզ է դառնում այն փաստը, որ կապիտալիզմը նրանց բերում է միայն խը-

րոնիկական գործազրկություն, ավելի ու ավելի հաճախակի դարձող տնտեսական ճգնաժամեր, նոր պատերազմներ ու սով, որ միայն կապիտալիստական սիստեմին վերջ տալով, մարդկությունը կարող է բարգավաճման ճանապարհը դուրս գալ:

***

Դաժան պատերազմի խավար գիշերին Սովետների երկիրը բարձր կանգնած է ինչպես մի փարոս, որ ցույց է տալիս ամբողջ աշխարհի աշխատավորներին ազատագրման ուղին:

Քաղաքացիական պատերազմի դաժան փորձությունների, վերականգնման շրջանի տարիների, ստալինյան հնգամյակների միջոցով բոլշևիկների պարտիան ՍՍՌՄ ժողովուրդներին տարել է և տանում է դեպի լուսավոր, բերկրալից կյանք:

Բանվոր դասակարգը ցարական հասարակարգից ժառանգություն ստացավ մի հետամնաց՝ քայքայված ժողովրդական տնտեսությամբ, աղքատ, հյուծված, քաղցած երկիր: Հայրենական և օտար կոնտրռևոլյուցիայի դեմ մղած քաղաքացիական պատերազմի տարիներին ժողովրդական տնտեսությունն է՛լ ավելի քայքայվեց: Ամբողջ աշխարհի բուրժուազիան և նրա պոչերը շարունակ Ռուսաստանի կործանման մասին



էին խոսում: Բայց Սովետական Ռեսպուբլիկան, ջախջախելով թշնամիներին և նրանց վռնդելով երկրի սահմաններից, ձեռնարկեց երկրի ժողովրդական տնտեսության վերականգնմանը: Մեր երկրի բանվոր դասակարգը, բոլոր աշխատավորները, ահագին դրկանքներ կրելով, բացառիկ աշխատանքային հերոսություն էին ցույց տալիս: Հենվելով միայն ներքին միջոցների վրա, կապիտալիստական թշնամական շրջապատման պայմաններում սովետական իշխանությունը վերականգնեց երկրի տնտեսությունը: 1926 թվին, երբ կապիտալիստական երկրների արդյունաբերությունը դեռ չէր հասել նախապատերազմյան մակարդակին, մեր երկիրն այդ մակարդակից արդեն անցել էր:

Երբ ամբողջ կապիտալիստական աշխարհը 1929 թվին ցնցվեց տնտեսական ճգնաժամից, միայն մեկ երկիր, սոցիալիզմի երկիրն էր ընթանում դեպի առաջ, հետագա տնտեսական զարգացման ուղիով: Հենց այդ տարիներում, երբ կապիտալիստական աշխարհի արդյունաբերությունը կատաստրոֆիկ կերպով ընկնում էր, երբ գործազուրկների բանակն այնտեղ տասնյակ միլիոններով էր հաշվվում, մեր երկիրն սկսեց իրագործել և հաջողությամբ կատարեց առաջին

հնգամյա պլանը— մեծ աշխատանքների Ստալինյան պլանը։

Հետագա տարիներում երկիրը հաջողությամբ լուծեց այն բոլոր հիմնական քաղաքական ու տնտեսական խնդիրները, որ դրել էր երկրորդ հնգամյա պլանը։ Ստալինյան երկու հնգամյակների տարիներում մեր՝ անցյալում փայտե ու ծղոտե երկիրը զրահ ու պողպատ հագավ, դարձավ մի հզոր ինդուստրիալ պետություն։ Դեն նետելով իր վրայից դարավոր հետամնացությունը, նա վերասարքավորեց ամբողջ արդյունաբերությունը նոր տեխնիկական բազայի վրա։ Պարապուտների (ПУСТЫРЬ) և աղբանոցների տեղում ծխալ սկսեցին գործարանների ու ֆաբրիկաների ծխնելույզները։ Այնտեղ, որտեղ անանցանելի խրուտներ (ТОПЬ) ու ճահճուտներ էին, իրենց լույսերն արձակեցին էլեկտրակայանները։ Կուսական լեռների ստորոտներում մետալուրգիայի գիգանտներ բուսնեցին և վառվել սկսեցին դոմնաներն ու մարտենյան հնոցները։

Ցարական Ռուսաստանում 1913 թվին 4,2 միլիոն տոնն չուգուն էր ձուլվում և այդքան էլ պողպատ, իսկ մեզանում 1938 թվին արդեն չուգունի ձուլվածքը հասավ տարեկան 14,6 միլ. տոննի և պողպատի ձուլվածքը— 18 միլիոն տոննի։ Ամբողջ ար-



դյունաբերության արտադրանքն այդ ժամանակները 9 անգամ ավելացել էր 1913 թ. համեմատությամբ։ Սովետական Միությունն արդյունաբերական արտադրանքի ծավալով առաջին տեղը գրավեց Եվրոպայում և երկրորդ տեղը՝ աշխարհում։

Երկրի ինդուստրացման բազայի վրա ստեղծվեց և ամրապնդվեց կոլտնտեսային կարգը գյուղում։ Մասնատված, փոշիացած գյուղացիական տնտեսությունների օվկիանոսի փոխարեն տարածվեցին կոլտնտեսային լայնարձակ արտերը։ Ցանքերի տարածությունը 1938 թվին արդեն 32 միլիոն հեկտարով ավելի էին քան 1913 թվին։ Գյուղատնտեսությունը զինված է առաջավոր տեխնիկայով։ Ցարական Ռուսաստանում 7,8 միլիոն արոր ու կոսուլ և 17,7 միլիոն փայտի փոցխ կար։ Դրանք միակ գործիքներն էին, որոնց օգնությամբ գյուղացին մշակում էր իր չնչին հողաբաժինը։ Այժմ կոլտնտեսային դաշտերում աշխատում են 500.900 տրակտոր, 168.900 կոմբայն և ահագին քանակությամբ գյուղատնտեսական այլ մեքենաներ։

Եվ այդ բոլորը— հողը, ֆաբրիկաներն ու գործարանները,— արտադրության բոլոր գործիքներն ու միջոցները— բոլորը ժողովրդին են պատկանում, սոցիալիստական

սեփականություն են։ Համառ պայքարում վերացված են շահագործող, պարազիտային բոլոր դասակարգերը։ Ընդմիշտ ոչնչացված է մարդու շահագործումը մարդու կողմից։ Չքացել է գործազրկությունը։ Չտեսնված չափերով աճել է աշխատավորների նյութական-կուլտուրական մակարդակը։

Ստալինյան երրորդ հնգամյակը բացեց ՍՍՌՄ զարգացման մի նոր շրջան— անդասակարգ սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և աստիճանաբար սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանը։ Այդ զարգացումը տեղի է ունենում ամբողջ սովետական ժողովրդի չտեսնված համախմբման և բարոյական-քաղաքական միասնության պայմաններում։ Ստալինյան կոնստիտուցիայի բարերար ճաճանչների տակ աճում ու ամրանում է ՍՍՌՄ ժողովուրդների՝ եղբայրական բարեկամությամբ զոդված մեծ ընտանիքը։ Սովետական Միությունը դարձել է մի հզոր պետություն, որին հարկադրված են հաշվի առնելու նրա բոլոր մոտիկ ու հեռավոր հարևանները։ Դուր է գալիս այդ նրանց՝ թե ոչ, սակայն Սովետական Միությունն ապրում է, աճում և ամրանում։ ՍՍՌՄ պետական նավը, որ վարում է մեծ նավավարի անհողդողդ ձեռ-



քը, անշեղ ընթանում է նշված ճանապարհով։

Իր գոյության առաջին օրից բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետությունը անշեղ կերպով ու հետևողականորեն պայքարում է խաղաղության գործի համար։

Հանուն խաղաղության մղվող մեծ պայքարի դրոշի տակ 1939 թ. սեպտեմբերին մեր փառապանծ Կարմիր բանակն իր ազատարար արշավանքը կատարեց դեպի Ուկրաինայի ու Բելոռուսիայի արևմտյան մարզերը։ Իրականություն դարձավ մեր արյունակից եղբայրների տարիների ընթացքում փայփայած իղձը՝ ազատագրվելու և Սովետական Միության հետ վերամիանալու մասին։

Հանուն խաղաղության մղած մեր պայքարի վառ տարեգրության մեջ, Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիայի քսաներեքերորդ տարին նոր փայլուն էջեր գրեց։

Ի պատասխան ֆիննական սպիտակգվարդիականների պրովոկացիոն գործողությունների մեր հերոսական Կարմիր Բանակը խորտակիչ հարված հասցրեց նրանց և քարուքանդ արեց պատերազմի օջախը Ֆինլանդիայում։ Խաղաղության իր քաղաքականությանը հավատարիմ, Սովետական Միու-

թյունն օկուպացիայի չենթարկեց ամբողջ Ֆինլանդիան, բավականանալով միայն այն միջոցառումներով, որոնք ապահովում են Լենինգրադի և մեր հյուսիս-արևմտյան սահմանի անվտանգությունը։

Խաղաղ և անարյուն ճանապարհով լուծվեց Ռումինիայի հետ ունեցած կոնֆլիկտը— Բեսարաբիայի և Հյուսիսային Բուկովինայի հարցը։ Այդ տերիտորիաները Սովետական Միության հետ միացնելով շտկվեց պատմական այն անարդարությունը, որ կատարել էր բոյարական Ռումինիան 1918 թվին եփխտաաապով Սովետական ռեսպուբլիկայի հանդեպ։

Ստալինյան խաղաղարար հաստատուն քաղաքականությունը, որ անշեղորեն վարում է սովետական կառավարությունը, մերկացրեց Միջազգային երկրների անհաջողակ պոլիտիկանների թշնամական փորձերը։ Լիտվայի, Լատվիայի և Էստոնիայի ժողովրդական մասսաները, համակված խաղաղության ձգտումով և ջերմ համակրանքով դեպի սոցիալիզմի երկիրը, տապալեցին իրենց՝ իմպերիալիստներին վաճառված բուրժուական կառավարություններին և միաձայն վճռեցին սովետական իշխանություն հռչակել և ձուլվել ՍՍՌՄ ժողովուրդների ընտանիքի մեջ։



Կապիտալիստական աշխարհն ստիպված եղավ մի փոքր սեղմվել։ Ընդարձակվեցին սոցիալիզմի երկրի սահմանները։ ՍՍՌՄ դարձավ 16 սովետական սոցիալիստական ռեսպուբլիկաների մի հզորագույն միություն։

Սովետական նոր մարզերի ու ռեսպուբլիկաների օրինակից, ցայտուն երևում է սոցիալիստական հասարակարգի բարեփոխիչ ու ստեղծագործական մեծ ուժը։ Բավական էր Ուկրաինայի և Բելոռուսիայի արևմտյան մարզերի մեկ տարվա ազատ գոյությունը, որ կենդանանային մարդիկ, աշխուժանային գյուղերն ու քաղաքները։ Բոռիսլավի նավթահանքերում գործարկված է 790 նավթային վիշկա,— որոնք անգործության էին մատնված լեհ-գերմանական պատերազմի սկզբից։ Տեքստիլ արդյունաբերության խոշոր կենտրոն է դարձել խորհրդային Բելոստոկը։ Արևմտյան Բելոռուսիայի աշխատավորությունը կարճ ժամանակամիջոցում կառուցեց Դնեպր-Բուգի 202 կիլոմետր երկարությամբ ջրանցքը։ Ազատագրված մարզերի քաղաքներում այլևս գործազուրկ չկա։ Գյուղերում ու ավաններում հողազուրկ գյուղացի չկա։ Արևմտյան Ուկրաինայի 400 հազարից ավելի հողազուրկ ու սակավահող գյուղացիներն ստացան մեկ

միլիոն հեկտարից ավելի հող, որ առաջ պատկանում էր կալվածատերերին, վանքերին ու օսադնիկներին։ Չորս հարյուր երեսուն հինգ հազար հեկտար վարելահող է բաշխված Բելոռուսիայի արևմտյան մարզերի չքավորներին, բատրակներին և միջակներին։ Հենց իրենց՝ գյուղացիների նախաձեռնությամբ Ուկրաինայի և Բելոռուսիայի նոր մարզերում 1000-ից ավելի կոլտնտեսություն է ստեղծված։ Առաջին կոլտնտեսություններն իրենց արտերից 16—18 ցենտներ հացահատիկ հավաքեցին մեկ հեկտարից, մինչդեռ լեհական պաների տիրապետության ժամանակ բերքը երբեք հեկտարին 10 ցենտներից ավելի չի եղել։

Վերածնության նույնպիսի պատկեր մենք արդեն այժմ տեսնում ենք և՛ Մերձբալթյան երկրներում և՛ Բեսարաբիայում, և՛ Հյուսիսային Բուկովինայում։ Միայն երկու ամսվա ընթացքում Լիտվայի 36 հազար գործազուրկներ աշխատանք ստացան։ Բանվորներն իրենց տեր զգացին արտադրության մեջ և խանդավառությամբ սոցիալիստական մրցություն են ծավալում։ «Ասիդիմաս» տեքստիլ ֆաբրիկայում աշխատանքի արտադրողականությունը երկուանգամ աճեց։ Բեսարաբիայի 64 հազարից ավելի հողազուրկ ու հողասակավ տնտեսություններն ստացան



կալվածատերերին ու վանքերին պատկանող ցանքերը, ինվենտարն ու անասունները։ Նոր մարզերի և հանրապետությունների ժողովուրդները ոգևորությամբ կառուցում են իրենց նոր կյանքը, նոր, սոցիալիստական կուլտուրան։ Ուկրաինայի արևմտյան մարզերի տարրական, թերի-միջնակարգ և միջնակարգ դպրոցներում իրենց մայրենի լեզվով 1254193 մարդ է սովորում։ Նոր ստեղծված են յոթ մանկավարժական բուհ, մեկ բժշկական բուհ և կոնսերվատորիա։ Լվովում ստեղծված է Ուկրաինական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի ֆիլիալ։ Բելոռուսիայի արևմտյան մարզերում այժմ կա 4278 բելոռուսական, 173 ռուսական, 932 լեհական, 150 հրեական, 61 լիտվական և 49 ուկրաինական դպրոց, ստեղծված է 6 թատրոն, ժողովրդական ստեղծագործության 5 տուն և 100 կինոթատրոն։

«Երջանկությունը մեր տունն է մտել,— ասում է Վոլինայի ազատագրված ռայոններից մեկի՝ Լենինի անվան կոլտնտեսության բրիգադիր Ս. Անդրիյչուկը։— Եվ մենք հիշում ենք, որ մեր երջանկության համար պարտական ենք Կարմիր Բանակին, բոլշևիկյան պարտիային և ընկեր Ստալինին»։

Հարավային Ուկրաինայի անցյալում, հողազուրկ գյուղացու այս խոսքերի մեջ լսա-

վում է ազատագրված աշխատանքի ուրախությունն զգացած միլիոնավոր նոր սովետական քաղաքացիների ձայնը։ Իրականացել են նրանց նվիրական երազները։ Ո՛չ բոյարական կուռը Բեսարաբիայում, ո՛չ լեհական դեֆենզիվան, ո՛չ էլ բարոնների մտրակը Մերձբալթյան երկրում— ոչինչ չէր կարող խորտակել ժողովրդական այն մասսաների հույսն ու կամքը, ովքեր ստրկության շղթաներից բուռն թափով ձգտում էին դեպի ազատ ու բերկրալից կյանք՝ Ստալինյան կոնստիտուցիայի արևի տակ։ Այդ մի ցայտուն ցուցանիշ է այն բանի, որ Հոկտեմբերի իդեաները, Ստալինյան կոնստիտուցիայի իդեաները խորը կերպով թափանցում են սահմանի այն կողմում գտնվող երկրների աշխատավորության սրտերը, արթնացնում և կոչ են անում նրանց պայքարելու հանուն ազատագրության։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐՁՐ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԻ ՄԵԿ ՏԱՐԻՆ

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քսաներեքերորդ տարին հավերժացավ հսկայական նվաճումներով սոցիալիստական տնտեսության բոլոր ճյուղերում։

Մեր սոցիալիստական արդյունաբերու-



թյունը օրեցօր ամսե-ամիս ավելի ու ավելի հաջող կերպով է շարժվում հիմնական տնտեսական խնդրի իրագործման ուղիով— հասնել ու անցնել առաջավոր կապիտալիստական երկրներից նաև տնտեսական բնագավառում։

Միլիոնավոր բանվորներ ու ծառայողներ համակված են իրենց բոլոր ուժերն ու գիտելիքները սոցիալիստական հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորությանը նվիրելու ազնիվ ձգտումով։ Աշխատավորների այդ միահամուռ կամքն իր արտահայտությունը գտավ ՀԱՄԿՍ առաջարկության մեջ— աշխատանքային օրը մինչև 8 ժամ երկարացնելու, յոթօրյա աշխատանքային շաբաթի և չվողների ու գործալիքների դեմ պայքարելու մասին։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունն ի պատասխան այդ առաջարկության ընդունեց մի հրամանագիր—ութժամյա աշխատանքային օրվա և յոթնօրյա աշխատանքային շաբաթի անցնելու և բանվորների ու ծառայողների՝ ձեռնարկություններից ու հիմնարկներից ինքնակամ հեռանալն արգելելու մասին։ Աշխատանքային նոր օրենքը պայմաններ ստեղծեց լրացուցիչ պրոդուկցիա արտադրելու, նրա որակը լավացնելու և ինքնարժեքն իջեցնելու համար։

Հունիսի 26-ի Հրամանագիրն արդեն տալիս է իր շոշափելի արդյունքները։ Ամրանում է աշխատանքային կարգապահությունը, ավելանում է պրոդուկցիայի արտադրումը։ Դոնբասի ութսուն հանքահոր գերակատարել են իրենց 8-ամսյա ծրագիրը։ Ենթամոսկովյան ավազանն ածխահանության օգոստոսի պլանը գերակատարել է 100 %-ով, իսկ սեպտեմբերի 24 օրվա պլանը կատարված է 104,5%-ով։ Սև մետալուրգիայի ձեռնարկություններում չուգունի ձուլումը սեպտեմբերի երկրորդ տասնօրյակում այս տարվա հուլիսի համեմատությամբ աճել է 12,4%-ով, պողպատի ձուլումը— 12,5%-ով, հանքաքարի հանույթը— 17,3 %-ով և այլն։ Նույնպիսի բարձր ցուցանիշներ է տալիս յուրաքանչյուր գործարան, յուրաքանչյուր ֆաբրիկա, որտեղ տնտեսավարներն ու բանվորները ճիշտ ու անշեղ կերպով կատարում են ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը։

Սակայն դեռ կան նաև այնպիսի Գործարաններ ու ֆաբրիկաներ, որտեղ աշխատանքային կարգապահության խախտումներ են տեղի ունենում։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի հուլիսյան պլենումը, ստուգելով Հրամանագրի իրագործման ընթացքը, բոլոր պար-



տիական, սովետական և տնտեսական կազմակերպություններից պահանջեց անշեղորեն ու ճշտությամբ իրագործել նոր աշխատանքային օրենքը և ամենավճռական կերպով պայքարել նրա բոլոր խախտումների դեմ։ ՀամԿ(բ)Պ ստալինյան Կենտկոմի այդ ցուցումը պետք է երկաթե օրենք դառնա ամեն մի պարտիական ու անպարտիական բոլշևիկի համար։

Աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու, աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող պայքարում ամենահսկայական դեր է կատարում սոցիալիստական մրցությունը։ Ստախանովականները, առաջավոր մարդիկ, իրենց օրինակով տանում են իրենց հետևից մնացած բանվորներին։

«Ցենտրալնայա Իրմինո» Ստալինի անվան հանքահորի ստախանովականները, այնտեղ, որտեղ 5 տարի առաջ ծնունդ առավ ստախանովական շարժումը, դիմել են Ստալինյան Երրորդ Հնգամյակի անվան մրցության բոլոր մասնակիցներին, առաջարկելով վերանայել և բարձրացնել իրենց պարտավորություններն այն աճած հնարավորությունների համեմատ, որոնք հայտնաբերվեցին հունիսի 26-ի Հրամանագրով։

Իրմինցիք որոշեցին իրենց տարեկան

պլանը կատարել ոչ թե մինչև դեկտեմբերի 12-ը, ինչպես նրանք նշել էին տարվա սկզբին, այլ մինչև նոյեմբերի 20-ը: Ստախանովական ածխահատների դիմումն արագորեն յուրացրին բոլոր գործարաններում և ֆաբրիկաներում: Օրջոնիկիձենավթի տրեստի Բաքվում առաջավոր 6-րդ նավթահորի նավթագործները պարտավորվեցին նավթի հանույթի տարեկան պլանը կատարել մինչև նոյեմբերի 7-ը, պլանից դուրս տալ 40 հազար տոնն վառելանյութ և ինքնարժեքն իջեցնել 10%-ով: Մեքենաշինարարներն իրենց պարտավորություններում գրանցեցին ավտոմոբիլներ, դազգյահներ, նավեր կառուցելու նոր ժամկետներ: Մանածագործները, կոշկագործները, սննդագործները, հաշվելով իրենց ռեսուրսները, պարտավորություն վերցրին, բարձրացնել լայն սպառման ապրանքների և սննդամթերքների արտադրությունը:

Ավելի ու ավելի է բոցավառվում մեր արդյունաբերության առաջատար ճյուղերի՝ սև ու գունավոր մետալուրգիայի ածխի և հանքային արդյունաբերության բանվորների մրցության կրակը:

Կրիվոյ-Ռոգի հանքային ավազանի և Դոնեցի ածխային ավազանի հանքափորների մրցությունն այնտեղ ծնեց սոցիալիստական



արտադրության նոր հերոսներ: Կրիվոյ-Ռոգի «Իլյիչ» հանքահորի շարքային հորատող Ալեքսեյ Սեմիվոլոսը դարձավ հանքի բազմահոր, արագ հանույթի նոր մեթոդի նախաձեռնողը: Այժմ նա և նրա հետևորդները մի հերթի ընթացքում կատարում են 10—12 նորմա: Սեմիվոլոսի բարձրացրած շարժումն արդեն լայն թափ ընդունեց: Դրա հետևանքով Կրիվոյ-Ռոգում հանքի օրական միջին հանույթն օգոստոսին բարձրացավ 9 հազար տոննով, իսկ սեպտեմբերին՝ ավելի շատ:

Դոնբասում աչքի ընկնող հաջողությունների հասավ Կույբիշևուգոլի տրեստի Ֆելիքս Կոնի անվան № 2/12 հանքահորի հանքակույտը մաքրող բանվոր Նիկոլայ Կրավցովը: Կիրառելով հանքահորը ջարդված ածխից մաքրելու նոր արագ մեթոդ, սեպտեմբերի 7-ին նա մի հերթի ընթացքում լավայից հավաքեց և բեռնեց 77 տոնն ածուխ, նորման կատարելով 855 %-ով:

Այս տարի գործարաններում ու ֆաբրիկաներում ավելի լայնորեն սկսվեց կիրառվել բազմադազգյահ սպասարկման փորձը: Համամիութենական ստախանովյան շարժումը բարձրացավ մի նոր աստիճանի: Երկիրը ճանաչեց նոր երևելի մարդկանց, սոցիա-

լիստական աշխատանքի հերոսներին ու վարպետներին:

Յարոսլավլի երկաթուղու Կապույտ դեպոյի երկաթուղային մեքենավար Պապավինը կրիվոնոսովյան մեթոդները լրացրեց լոկոմոտիվի բազմամյա պահպանման իր մեթոդով: Ամենավերջերս մի այլ մեքենավար, Կրասնի Լիմանի դեպոյում աշխատող Կոնոպկինը ապացուցեց, որ հնարավոր է շոգեքարշի վազքի նորման ավելացնել առանց ջուր և վառելանյութ ավելացնելու:

Արտադրանքի քանակական աճման հետ միասին ձեռնարկություններում համառ պայքար է ծավալվում արտադրանքի բարձր որակի համար: Այս կարևորագույն գործում հսկայական դեր խաղաց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հուլիսի 10-ի Հրամանագիրը վատորակ կամ չկոմպլեկտավորված արտադրանք տալու և արդյունաբերական ձեռնարկությունների պարտադիր ստանդարտները չկատարելու համար պատասխանատվություն սահմանելու մասին:

Սովետական պետությունը չի կարող հանդուրժել այն դրությունը, երբ գործարաններում ու ֆաբրիկաներում գործում են խոտան արտադրողներ: Վատորակ արտա-



դրանք տալն այնուհետև համարվում է հակապետական ծանր հանցանք:

Հոկտեմբերյան տոնի օրը նշելով մեր արդյունաբերության հաջողությունները, մենք պետք է նորից ու նորից ստուգենք, թե ինչպես է կատարվում աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակը բարձրացնելու մասին օրենքը: Արդյոք ամե՞ն ինչ արված է 480 րոպե աշխատանքային ժամանակը առավելագույն չափով օգտագործելու համար: Սովորե՞լ են արդյոք աշխատել լավ, առանց խոտանի և կորուստների: Մեր լավագույն նվերը կլինի հոկտեմբերի 23-րդ տարեդարձին ամբողջովին վերացնել աշխատանքային դիսցիպլինայի բոլոր և ամեն տեսակ խախտումները, ստեղծել աշխատանքի արտադրողականության նոր վերելք, արտադրանքի որակի բարձրացում:

Ընկ. Շվերնիկը ՀԱՄԿՍ IX պլենումում տված զեկուցման մեջ ասաց. «Յուրաքանչյուր բանվոր և յուրաքանչյուր բանվորուհի, յուրաքանչյուր ինժեներ, տեխնիկ և ծառայող պետք է լիովին ըմբռնեն միջազգային իրադրության ամբողջ բարդությունն ու վտանգավորությունը, պարզորոշ պատկերացնեն իրենց այն խնդիրները, որ դրված են մեր երկրի առջև, և պատրաստ

լինեն դիմելու անհրաժեշտ զոհաբերությունների»: Մեր երկրի աշխատավորները սովետական իշխանության 23 տարիների ընթացքում մեկ անգամ չէ, որ ցույց են տվել իրենց գիտակցականությունն ու աշխատանքային խանդավառությունը: Կասկած չկա, որ նրանք այսուհետև էլ ցույց կտան անձնուրաց, հերոսական աշխատանքի է՛լ ավելի բարձր նմուշներ:

Հոկտեմբերի 23-րդ տարեդարձը մեծ նվաճումներով են դիմավորում մեր կոլխոզներն ու սովխոզները: Բերքը լավ է այս տարի: Հարյուր փութ բերքն եզակիների նվաճումը չէ, այլ ամբողջ կոլխոզային բրիգադների և կոլխոզների: Ռոստովի մարզի Սալսկի շրջանում բոլոր 69 կոլխոզները յուրաքանչյուր հեկտարից հավաքել են 115 փութ հացահատիկ, իսկ «Գիգանտ» և «Սալսկի» հացահատիկային սովխոզները՝ 120-ական փութ: Ընդհանուր առմամբ միայն Սալսկի շրջանում հացահատիկի համախառն բերքը հավասար է ամբողջ Շվեդիայի համախառն բերքի մի քառորդին:

Սոցիալիստական դաշտերի ստախանովականներն իրենց աշխատանքի ընթացքում ցուցաբերում են իսկական հերոսա-



թյուն: Կուրսկի մարզի Կրասնոյարուժսկի շրջանի «Կոմսոմոլեց» կոլխոզի անդամ Ն. Բաղացկայան իր օղակի մասին պատմում է հետևյալը. «...Մենք հաշվի չէինք առնում ժամանակն ու եղանակը: Երբ հարկավոր էր՝ աշխատում էինք անձրևի ժամանակ, ուշ գիշերը և վաղ առավոտյան: Համառ աշխատանքը տվեց իր պտուղները: Աճեց բարձր, ամուր ու պատի պես խիտ հաճար: Հաճարը չէին կարողանում վերցնել ոչ կոմբայնները, ոչ էլ հնձիչ մեքենան: Ամբողջ տարածության մի հեկտարից մենք հավաքեցինք 51 ցենտներ 92 կիլոգրամ, իսկ մի առանձին հեկտարից, որի նկատմամբ մենք առանձին խնամք ցույց տվինք, ստացանք 73 ցենտներ 56 կիլոգրամ, կամ 441 փութ»:

Ստախանովյան փառավոր գործերով իրենց հռչակեցին Սովետական Միության շատ կոմբայնավարներ ու տրակտորիստներ: Անվանի կոմբայնավարներ եղբայրք Օսկինները, այս տարի աշխատելով Չկալովյան մարզի Մուստաևսկու շրջանի դաշտերում, 32 աշխատանքային օրում 2 լայն «Կոմունար» կոմբայններով հավաքեցին 4572 հեկտար հացահատիկային կուլտուրա: Այդ ժամանակամիջոցում տնտեսված

է 5700 կիլոգրամ վառելանյութ։ Կոմբայնով բերքահավաքի վարպետ ընկ. Պոնոմարյովը 2 կոմբայնով Վորոնեժի մարզի Զեմլյանսկի շրջանի կոլխոզներում հացահատիկ հավաքելիս հասավ ռեկորդային արտադրողականության՝ օրական 120 հեկտարի։

Սոցիալիստական երկրագործության և նրա լավագույն մարդկանց հաջողությունները բոլշևիկյան պարտիայի և սովետական կառավարության անդադրում հոգատարության ուղղակի արդյունքն են կոլխոզային կարգի բարգավաճման ասպարիզում։ Ստալինյան այս հոգատարությամբ են համակված ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի այս տարի ընդունած որոշումները գյուղատնտեսական պրոդուկտների մթերումների ու գնումների քաղաքականության մեջ փոփոխությունների, բերքահավաքի և մթերումների վերաբերյալ։

Դեռևս անցյալ տարի պարտիան և կառավարությունը որոշում ընդունեցին կոլխոզներում հանրային անասնապահությունը զարգացնելու միջոցառումների մասին։ Կոլխոզների ճնշող մեծամասնությունը բոլշևիկորեն պայքարում է այս կարևորագույն որոշումը կատարելու համար։ Միայն մի



տարում կոլխոզներում ստեղծված է մոտ 200 հազար անասնաբուծական ֆերմա՝ մոտավորապես կեսն այն քանակի, ինչ ստեղծել են կոլխոզները նախընթաց 9 տարում։ Նոր ֆերմաները կոմպլեկտավորելու և հները լրացնելու համար ձեռք են բերված միլիոնավոր գլուխ անասուններ։

Հին գյուղը բնորոշ էր ոչ միայն ծուռ ու մուռ խրճիթներով, այլև մեծ գյուղերից հեռու ընկած կորած-մոլորած խուտորներով ու ավաններով—զանազան «Մոխոյեդներով», «Կորոյեդներով», «Օստրովնոյներով» և այլն։ Այժմ կոլխոզային գյուղը վերակառուցվում է նաև այս տեսակետից. խուտորներից և փոքրիկ գյուղերից կոլխոզնիկները ընտանիքներով տեղափոխվում են ավելի խոշոր գյուղեր, որտեղ գտնվում է այս կամ այն կոլխոզի կենտրոնը։

Գյուղում նորություն է ճանապարհների, ջրանցքների, կամուրջների կառուցումը իրենց իսկ կոլխոզնիկների ուժերով, նրանց սեփական նախաձեռնությամբ։ Ոգեշնչված Ֆերգանի Մեծ ջրանցքը կառուցողների հերոսական օրինակով, տասնյակ հազարավոր կոլխոզնիկներ ձեռնարկել են շինարարության։ Այնտեղ, որտեղ դարերով իշ-

խում էր անճանապարհայնությունը, որտեղ անանցանելի ճահիճներ էին, կառուցված են և կառուցվում են հաղորդակցության հարմար ճանապարհներ, ամուր կամուրջներ։ Սրանով չի սպառվում կոլխոզնիկների նախաձեռնությունը։ Այս տարվա մայիսին Վորոնեժի մարզի Տալովսկի շրջանի «Ժելեզնոդորոժնիկ» կոլխոզի անդամները կոչ են արել կոլխոզնիկներին սկսելու կոլխոզային ջրամբարների կառուցումը։ Այս կոչը լսվեց ամբողջ երկրում։ Կոլխոզներում կառուցվում են լճեր, ամբարտակներ, կազմակերպվում են ջրային թռչունների ֆերմաներ։ Կոլխոզներին մեծ եկամուտներ է տալիս ձկնաբուծությունը լճերում։ Տալովսկի շրջանի «Կրասնի դեկաբր», «Պամյատ Լենինա», «XVII պարտսյեզդ» կոլխոզներում լճեր են գցված 13,5 հազար ծածան ձուկ։ Սեպտեմբերին տարեկան ծածանը կշռում էր 800 գրամ։

Այսպես, տարեց տարի ավելի ու ավելի է լայնանում և բազմակողմանի դառնում կոլխոզների տնտեսությունը, ավելի ու ավելի շատ արտադրանք են տալիս նրանք պետությանը, ավելի ու ավելի են աճում կոլխոզների ու կոլխոզնիկների եկամուտները։



Ազնիվ, առաջավոր կոլխոզնիկները վրդովմունքով ու զայրույթով են խոսում այնպիսի մարդկանց մասին, որոնք կոլխոզնիկի անունն են միայն կրում, իսկ իրականում ավելի շատ հոգ են տանում իրենց անձնական տնտեսության մասին, սպեկուլյացիայով են զբաղվում և արհամարհում կոլխոզի գործը։ Ազդեցության խիստ միջոցներ են պետք նրանց դեմ, ովքեր խախտում են կոլխոզային կարգապահությունը, կոլխոզային կյանքի ստալինյան կանոնադրությունը։ Կոլխոզը չի կարող հանդուրժել գիշերօթիկների, որոնք խախտում են աշխատանքային դիսցիպլինան, թույլ չեն տալիս առաջ գնալու։ Հարկավոր է հասնել այն դրության, որպեսզի բոլոր կոլխոզնիկներն աշխատեն ազնվորեն ու բարեխիղճ, և այն ժամանակ սոցիալիստական երկրագործությունն է՛լ ավելի մեծ հաջողություններ ձեռք կբերի։

Սոցիալիստական գյուղատնտեսության սքանչելի նվաճումները ինչպես հայելու մեջ արտացոլված են Համամիութենական Գյուղատնտեսական Ցուցահանդեսում առաջավոր փորձի Համամիութենական այս համալսարանում։ Ցուցահանդեսը բազմահազար կոլխոզների հնարավորություն

ավել ծանոթանալու գյուղատնտեսության առաջավորների աչքի ընկնող նվաճումներին։ Հենց այստեղից սկսվեց կոլխոզային բրիգադիրների մրցությունը հարյուր փութ բերքի համար։ Ցուցահանդեսի մասնակից լավագույն կոլխոզների օրինակով կոլխոզային օղակներում ու բրիգադներում առաջացան ստախանովյան դպրոցներ։

1940 թ. Ցուցահանդեսին մասնակցելու իրավունքի համար մրցում էին տասնյակ հազարավոր կոլխոզներ։ Այժմ կոլխոզներում սկսվում է մրցության նոր ալիք 1941 թվին Ցուցահանդեսին մասնակցելու իրավունքի համար։ Այս մրցությունն իրականության մեջ օգնում է բարելավելու կոլխոզային արտադրությունը, աճեցնելու սոցիալիստական գյուղատնտեսության նորանոր հարվածայիններ և ստախանովականներ։

## ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԴՐՈՇԻ ՏԱԿ

Սոցիալիստական հանրակարգը ամենալայն ճանապարհ է բացում մարդու բոլոր լավագույն ուժերի, ընդունակությունների ու ձիրքերի զարգացման համար, ժողովրդական տաղանդների աննախընթաց աճման համար, որոնց, կապիտալիզմը, Լենինի արտահայտությամբ, «ճզմում, ճըն-



շում, խեղդում էր հազարներով ու միլիոններով»։ Լաբորատորիաների անդորրության մեջ և գործարանային ցեխերի դղրդոցում, գիտնականների կաբինետներում ու կոլխոզների դաշտերում բեղմնավոր աշխատանք է կատարում սովետական մարդկանց նովատորական միտքը՝ հարստացնելով գիտությունը, առաջ մղելով նրան։

Այն օրերին, երբ կապիտալիստական աշխարհում պատերազմի ավերիչ փոթորիկը փլատակների է վերածում համալսարանները, թանգարանները, գրադարանները, ոչնչացնում է մարդկության ստեղծած կուլտուրական արժեքները, սոցիալիզմի երկրում եռում է խաղաղ, ստեղծագործ աշխատանքը, շարունակվում է գիտության, արվեստի, գրականության ծաղկումը, ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկումը։

Լենինի-Ստալինի պարտիան մեր երկիրը դուրս բերեց անկուլտուրականության խավարից և վստահելի ձեռքով սովետական ժողովրդին առաջ է տանում պրոգրեսի և կուլտուրայի ճանապարհով։

Դպրոցներում, տեխնիկումներում, բարձրագույն ուսումնական հաստատություն-

ներում սովորողների թիվը հասնի է 40 միլիոնի։ Սա 5 անգամ ավելի է 1913—1914 թվին սովորողների քանակից։ Այս տարի ավելի քան 190 հազար սովետական երիտասարդներ ու աղջիկներ առաջին անգամ մտան բուհ-երի և տեխնիկական բուհ-երի աուդիտորիաները։

Քաղաքային և կոլխոզային երիտասարդությունը մեծ հրճվանքով դիմավորեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը «ՍՍՌՄ պետական Աշխատանքային Ռեզերվների մասին» և ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետի որոշումները ՍՍՌՄ Ժողկոմսովետին կից Աշխատանքային Ռեզերվների Գլխավոր վարչություն կազմելու մասին, քաղաքային և կոլխոզային երիտասարդությանը Արհեստագործական Ուսումնարաններ, Երկաթուղային Ուսումնարաններ և Ֆաբրիկա-գործարանային Ուսուցման դպրոցներ կանչելու մասին։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը նախատեսնում է ամեն տարի արդյունաբերությանը հանձնելու համար պատրաստել 800 հազարից մինչև մեկ միլիոն մարդ պետական աշխատանքային ռեզերվներ՝ քաղաքային և կոլխոզա-



յին երիտասարդությանը սովորեցնելով որոշակի արտադրական պրոֆեսիաների։

Պետությունն ամենանպաստավոր պայմաններ է ստեղծում հիմնվող դպրոցներ ու ուսումնարաններ հրավիրվող երիտասարդության համար։ Այս բոլոր դպրոցներում ուսուցումը պետք է կատարվի ձրի. սովորողները գտնվելու են պետության խնամքի տակ։

Սովետական կառավարության միջոցառումը պետական աշխատանքային ռեզերվներ ստեղծելու վերաբերյալ հսկայական ժողովրդատնտեսական նշանակություն ունի։ «Մեր արդյունաբերության հետագա զարգացման խնդիրը պահանջում է նոր բանվորական ուժի մշտական հոսանք շախտաները, հանքավայրերը, տրանսպորտը, ֆաբրիկաները ու գործարանները։ Առանց բանվոր դասակարգի կազմն անընդհատ համալրելու հնարավոր չէ հաջողությամբ զարգացնել մեր արդյունաբերությունը»,— ասված է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրում։

Սրա հետ միասին այս միջոցառումը կարևորագույն քայլերից մեկն է բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակը բարձրացնելու ուղղությամբ։

Մեր երկրում բոլոր պայմաններն ստեղծված են աշխատավորության լայն մասսաների կուլտուրական աճման համար։ Մինչև հեղափոխություն Ռուսաստանի հանրակրթական դպրոցներում բնակչության հազար մարդուց սովորում էր 56 հոգի։ Այժմ ՍՍՌՄ-ում բնակչության հազար մարդուն ընկնում է 197 սովորող, մինչդեռ Անգլիայում ընկնում է 156 և Գերմանիայում՝ 132 հոգի։ Անվերադարձ անցյալի գիրկն են ընկել անկուլտուրականության սև օրերը, որոնցով հռչակված էր ցարական Ռուսաստանը։ Ահավասիկ մի քանի հետաքրքրական թվեր։ 1897 թվականի մարդահամարի տվյալներով, բնակչության գրագետների թիվը կազմում էր 24 տոկոս, իսկ կանանց՝ 12,4 տոկոս։ 1939 թվականին կատարված համամիութենական մարդահամարի տվյալներով գրագետները կազմում են 81,2 տոկոս, կանանց մեջ՝ 72,6 տոկոս։ Առանձնապես հրճվալի են ազգային հանրապետությունների հաջողությունները։ Այսպես, օրինակ, Տաջիկստանում դեռևս 1926 թվին գրագետների թիվը կազմում էր ընդամենը միայն 3,7 տոկոս, իսկ 1939 թվին կային արդեն 71,7 տոկոս գրագետներ։



Մեր աչքի առջև տեղի է ունենում ազգային կուլտուրաների ոչ միայն վերելք, այլև մերձեցում։ Սովետական նոր մարդերի ու ռեսպուբլիկաների քաղաքացիներն իրենց թատրոններում լսում են ՍՍՌՄ լավագույն դերասանների ու երաժիշտների ելույթները և իրենց հերթին իրենց արտիստական ուժերն ուղարկում Մոսկվա, Լենինգրադ, Կիև, Մինսկ և Սովետական Միության ուրիշ քաղաքներ։ Այնպիսի նշանավոր գրողների երկեր, ինչպես են Իվան Ֆրանկոն, Վանդա Վասիլևսկայան, դառնում են Սովետական Միության բոլոր ժողովուրդների սեփականությունը։

Աճում է սովետական ժողովրդի գաղափարական-քաղաքական մտահորիզոնը։ Միլիոնավոր մարդիկ մեծագույն հետաքրքրությամբ կարդում և ուսումնասիրում են «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացը»— մարքսիզմ-լենինիզմի հիմնական գիտելիքների այդ սքանչելի էնցիկլոպեդիան։ Ստալինյան այդ դասագրքի հանդեպ եղած մեծագույն հետաքրքրության մասին վկայում են նրա տարածման վերաբերյալ թվերը։ 2 տարվա ընթացքում այս գիրքը հրատարակվեց ՍՍՌՄ ժողովուրդների 53 լեզուներով 16.184.900 օրինակ։ Բացի սրա-

նից զանազան երկրներում նա հրատարակվել է 28 լեզվով 1.200 հազար օրինակ։

ՀամԿ(բ)Պ պատմության ուսումնասիրությունը հաստատապես վստահություն է ներշընչում Լենինի-Ստալինի պարտիայի մեծ գործի վերջնական հաղթանակի նկատմամբ, ամբողջ աշխարհում կոմունիզմի հաղթելու նկատմամբ։ Այս ուսումնասիրության արդյունքներն արտահայտվում են նաև ամենօրյա գործնական աշխատանքներում։ Ուսումնասիրելով ՀամԿ(բ)Պ պատմությունը, մարդիկ իրենց մեջ դաստիարակում են բոլշևիկների բոլոր լավագույն գծերը, այն գծերը, որոնցով օժտված են բոլշևիկյան պարտիայի հիմնադիրներ և ուսուցիչներ Լենինն ու Ստալինը։ Սովետական քաղաքացուն բարձր հատկությունների այս դաստիարակումը հսկայական նշանակություն է ձեռք բերում մեր երկրի զարգացման նոր շրջանի պայմաններում, անդասակարգ սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և աստիճանաբար սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանի պայմաններում։ Հատկապես այժմ, ինչպես նշել է ՀամԿ(բ)Պ XVIII համագումարը, կոմունիստական գիտակցականությունը վճռական նշանակություն ունի, ուստի և կոմունիս-



տական դաստիարակության խնդիրները մղվում են առաջին պլանի վրա։

Մենք պայքարում ենք մարդկանց գիտակցության մեջ եղած կապիտալիզմի բոլոր ու ամեն տեսակ մնացուկների դեմ։ Մենք պայքարում ենք ընդդեմ անբարեխիղճ վերաբերմունքի դեպի աշխատանքը և սոցիալիստական սեփականությունը, ընդդեմ լոդրության, գռփողության, խուլիգանության, ընդդեմ կրոնական նախապաշարմունքների, ընդդեմ նացիոնալիզմի և ազգային տարբերության ամեն տեսակ մնացուկների, ընդդեմ բուրժուական մնացուկների կենցաղում և ընտանիքում, ընդդեմ սանձարձակության և բարոյական անմաքրության, ընդդեմ քաղքենիական, անտարբեր վերաբերմունքի դեպի պետության շահերը, ընդդեմ ինդիվիդուալիզմի, էգոիզմի, շողոքորթության, անհոգության, կարյերիզմի — ընդդեմ անիծյալ ստրկական անցյալից ժառանգված բոլոր սովորությունների ու նախապաշարմունքների։

Մենք պայքարում ենք հանուն նոր, կոմունիստական վերաբերմունքի դեպի աշխատանքը, որովհետև մենք աշխատում ենք ոչ թե կապիտալիստի, ոչ թե տիրոջ համար, այլ մեր սոցիալիստական պետության հա-

մար— մեզ համար, որովհետև մեր երկրում աշխատանքը պատվի, փառքի և հերոսության գործ է։

Մենք պայքարում ենք հանուն բարեխիղճ հոգատար վերաբերմունքի դեպի սոցիալիստական սեփականությունը, որովհետև այն բոլորը, ինչ մենք ունենք՝ հողը, ֆաբրիկաները, գործարանները— մեր երկրի բոլոր հարստությունները պատկանում են մեզ, ժողովրդին։

Մենք պայքարում ենք հանո՛ւն մարդկանց միջև նոր հարաբերություններ ստեղծելու՝ հիմնված ոչ թե կապիտալիզմի գայլային օրենքների, այլ մեր, կոմունիստական մորալի վրա։ Լենինն ասում էր «Մենք պետք է աշխատենք, որպեսզի դուրս վռնդենք «յուրաքանչյուրն իր համար, միայն աստված բոլորի համար» անիծյալ կանոնը... Մենք պետք է աշխատենք, որպեսզի մասսաների գիտակցության մեջ, ամենօրյա կյանքի մեջ արմատացնենք «բոլորը մեկի և մեկը բոլորի համար» կանոնը...» (Լենին, երկեր, XXV հ., էջ 256)։

Կոմունիստական պարտիան դաստիարակել է միլիոնավոր պարտիական և ոչ պարտիական բոլշևիկներ, առաջավոր սովետական մարդիկ, որոնց համար անձնական



շահերից բարձր, կյանքում ամենից ավելի բարձր են ժողովրդի շահերը, սոցիալիստական հայրենիքի բարիքը, կոմունիզմի գործը։ Հենց հանուն այս բանի են և՛ ստախանովյան, անձնուրաց աշխատանքը, և՛ ստեղծագործական նվաճումները, և՛ մարտական խիզախությունները։

Մասսաներին վարակող այս գաղափարայնությունը, այս էնտուզիազմը, այս անձնուրացությունը մենք տեսանք թե՛ պրոլետարական ռևոլյուցիայի համար մղված պայքարի դժվարին տարիներին, թե քաղաքացիական պատերազմի դաժան տարիներին, թե երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման համար պայքարելու տարիներին։ Մենք այդ տեսել ենք և տեսնում ենք մշտապես՝ թե՛ այն լարված օրերին, երբ հայրենիքին վտանգ է սպառնում և թե՛ ամենօրյա սոցիալիստական աշխատանքի օրերին։

Ավիաքիմի անվան գործարանի (Մոսկվա) հին բանվորուհի ընկ. Ալեքսեևան պատմում է. «Երբ հարձակվեցին Դենիկինն ու Կոլչակը, մենք աշխատում էինք 12 ժամ և սնվում փտած կարտոֆելով։ Եվ մենք սիրով էինք աշխատանքի գնում, որովհետև պաշտպանում էինք մեր հայրենիքը»։

Սպիտակ ֆինների դեմ կռվելու օրերին Լենինգրադի Կիրովի անվան կարմրադրոշ գործարանում հերթի աշխատանքից առաջ կարդում էին 2 ամփոփագիր. մեկը՝ Լենինգրադի ռազմական օկրուգի շտաբինը ռազմաճակատից և մյուսը՝ գործարանի կողմից օրվա առաջադրանքը կատարելու մասին: Մարդիկ մի քանի օրով դուրս չէին գալիս ցեխերից, որպեսզի կատարեն բանակի պատվերը: Ռազմաճակատին անհրաժեշտ ճարտարապետական նոր կառուցվածքները ստեղծում էին 24 ժամում: Պաշտպանության համար աշխատող հնոցները չկանգնեցնելու համար դրանք նորոգվում էին գործելիս. մարդիկ, ազբեստե կոստյում հագած իջնում էին հնոցը և նորոգություն կատարում 80 աստիճան տաքության մեջ:

Սովետական մարդկանց համար «հայրենիք» և «կոմունիզմ» հասկացողությունները ձուլվում են միմյանց: Հանուն սոցիալիստական հայրենիքի, հանուն կոմունիզմի սովետական հայրենասերները տալիս են իրենց բոլոր ուժերը, իսկ եթե պետք է՝ նաև կյանքը: Հանուն դրան էին համարձակ կռվի գնում լավ զինված և քանակապես գերազանցող թշնամու դեմ կարմիր մարտիկները քաղաքացիական պատերազմի ծանր տարինե-



րին: Հանուն դրա էին Ստալինի անունը շրթունքներին անձնուրացորեն կռվում մեր մարտիկներն ու հրամանատարները Խասան լճի մոտ, Խալխին-Գոլի մոտ, Ֆինլանդիայի ձյունապատ դաշտերում:

Սովետական պատրիոտիզմը անխզելիորեն կապված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի զգացմունքի հետ: Սա առանձնապես ցայտուն կերպով արտահայտվեց Կարմիր Բանակի մարտիկների եղբայրական, հուզիչ հանդիպումների ժամանակ Արևմտյան Ուկրաինայի, Արևմտյան Բելոռուսիայի, Բեսսարաբիայի և Հյուսիսային Բուկովինայի Լիտվայի, Լատվիայի, Էստոնիայի աշխատավորության հետ, որոնք ՍՍՌՄ ժողովուրդների ընտանիքի մեջ ձեռք բերեցին իրենց իսկական հայրենիքը:

Սովետների երկիրն իր գոյության առաջին իսկ օրից դարձավ բոլոր երկրների աշխատավորության հայրենիքը: Ընկեր Ստալինը ՀամԿ(բ)Պ XVII համագումարում տված զեկուցման մեջ ասաց. «ՍՍՌՄ բանվոր դասակարգը համաշխարհային պրոլետարիատի մի մասն է, Նրա առաջավոր ջոկատը, իսկ մեր ռեսպուբլիկան՝ համաշխարհային պրոլետարիատի զավակը... ՍՍՌՄ բանվոր դասակարգի ինտերնացիոնալ կապերը կապիտա-

լիստական երկրների բանվորների հետ, ՍՍՌՄ բանվոր դասակարգի եղբայրական միությունը բոլոր երկրների բանվորների հետ,— ահավասիկ սովետների ռեսպուբլիկայի ուժի ու հզորության անկյունաքարերից մեկը։ Արևմուտքի բանվորներն ասում են, որ ՍՍՌՄ բանվոր դասակարգը համաշխարհային պրոլետարիատի հարվածային բրիգադն է։ Սա շատ լավ է... սա նշանակում է, որ մենք պետք է մեր աշխատանքով արդարացնենք բոլոր երկրների պրոլետարների հարվածային բրիգադի պատվավոր կոչումը։ Սա պարտավորեցնում է մեզ, որպեսզի մենք ավելի լավ աշխատենք և ավելի լավ պայքարենք սոցիալիզմի վերջնական հաղթանակի համար մեր երկրում, սոցիալիզմի հաղթանակի համար բոլոր երկրներում»։

Այս խոսքերը մեր երկրի միլիոնավոր աշխատավորներին ոգեշնչել են և ոգեշնչում են հարվածային, ստախանովյան աշխատանքի, աշխատանքային հերոսությունների։ Մենք գիտենք, որ մեր հաջողությունները բարձրացնում են արտասահմանյան պրոլետարիատի ոգին, նրա մեջ հավատ են ամրացնում իր ուժերի, իր հաղթանակի նկատմամբ, նրան հույս են տալիս դուրս պրծնելու կապիտալիզմի անթափանց խա-



վարից, իմպերիալիստական պատերազմի արյունոտ անդունդից։

Մենք պետք է աշխատենք ավելի շատ և ավելի լավ, որպեսզի ամրապնդենք մեր սոցիալիստական մեծ հայրենիքի հզորությունը, ուժեղացնենք նրա պաշտպանունակությունն ու մեր մոբիլիզացիոն պատրաստականությունը, «որպեսզի ոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների ոչ մի ֆոկուս մեզ հանկարծակիի չբերեն...» (ՍՏԱԼԻՆ)։

Մենք պետք է աշխատենք ավելի շատ և ավելի լավ, որպեսզի էլ ավելի փարթամորեն ծաղկի մեր երկիրը, որպեսզի ավելի հաջող ու արագ նա առաջ ընթանա կոմունիզմի ճանապարհով՝ այն մեծ ճանապարհով, որ մեզ ցույց են տվել մարդկության հանճարներ Մարքսը, Էնգելսը, Լենինը, Ստալինը։

Մարքսի-Էնգելսի-Լենինի-Ստալինի դրոշով մենք հաղթեցինք Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի համար մղած կռիվներում։ Այդ դրոշով մենք ձեռք բերեցինք սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում։

Մարքսի-Էնգելսի-Լենինի-Ստալինի դրոշով սոցիալիստական ռևոլյուցիան կհաղթանակի համայն աշխարհում։

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒՄՆ ՈՒ ԿԱՏԱՐՈՒՄԸ

(Պատմական տեղեկանք)

*1917 թվականի հուլիս-օգոստոսին, Պետրոգրադում տեղի էր ունենում բոլշևիկյան պարտիայի VI համագումարը, որը պարտիայի առջև խնդիր դրեց զինված ապստամբություն, սոցիալիստական ռևոլյուցիա կատարելը: Լենինը չէր կարող այդ համագումարում լինել, որովհետև նա ստիպված էր ընդհատակում թաքնվել այն պատճառով, որ հակառևոլյուցիոն ժամանակավոր կառավարությունը հրաման էր հրատարակել նրան ձերբակալելու մասին: Ըստ Լենինի դիրեկտիվների, համա-*



*գումարը ղեկավարում էր ընկեր Ստալինը:*

*Այդ միջոցին գործն այնպես էր դասավորվել, որ ամբողջ իշխանությունը գտնվում էր ժամանակավոր կառավարության ձեռքին: Այդ տեղի ունեցավ մենշևիկների ու էսերների դավաճանության հետևանքով, Սովետները այն ժամանակ նրանց ղեկավարության ներքո էին գտնվում, նրանք դարձել էին ժամանակավոր կառավարության կցորդը: Իսկ ժամանակավոր կառավարությունը, իր ձեռքում կենտրոնացնելով իշխանության ամբողջ լիակատարությունը, ուժգնորեն ամեն տեսակ ռեպրեսիաներ էր գործադրում ռևոլյուցիոն բանվորների դեմ, բոլշևիկների պարտիայի դեմ: Այդ սև գործում ժամանակավոր կառավարության ուղղակի մասնակիցներն էին մենշևիկներն ու էսերները: Եվ որովհետև մենշևիկներն ու էսերները շարունակում էին դեռևս մնալ Սովետների ղեկավարության մեջ, ապա պարտիան այդ դեպքում փոփոխված իրադրության պատճառով չէր կարող այլևս կառչած մնալ «Ամբողջ իշխանությունը Սովետների՛ն» լոզունգից: Պարտիան չէր կարող այդ լոզունգից կառչած մնալ, երբ*

Սովետները դարձել էին հակառևոլյուցիոն։

Այն ժամանակ պարտիան ժամանակավոր կառավարությունը տապալելու լոզունգ չէր առաջադրում, որովհետև ժամանակավոր կառավարությունը հենված էր Սովետների վրա, որոնք տակավին վայելում էին մասսաների վստահությունը, ապա այժմ, երբ մենշևիկյան-էսէրական Սովետները իրենք մասսաների դեմ դարձան, բանը փոխվեց։ Մնում է մի բան, ասում էր ընկեր Ստալինը համագումարում,— ուժով վերցնել իշխանությունը տապալել ժամանակավոր կառավարությունը։ Իսկ «Ամբողջ իշխանությունը Սովետների՛ն» լոզունգը պետք է վերացվի։ Իհարկե, «Ամբողջ իշխանությունը Սովետների՛ն» լոզունգի այդ ժամանակավոր վերացումն ուղղված էր այն Սովետների դեմ, որոնց ղեկավարում էին մենշևիկներն ու էսէրները, բայց դա չէր նշանակում առհասարակ հրաժարվել Սովետների իշխանության համար պայքար մղելուց։ Պարտիան, որին ուղղություն էին տվել իր VI համագումարի որոշումները, գնում էր դեպի զինված ապստամբություն։

Պարտիայի որոշումները հենված էին



այն վստահության վրա, որ մասսաների մեջ ավելի ու ավելի հասունանում է վճռական ռևոլյուցիոն գործողությունների անցնելու պատրաստակամությունը։

Բուրժուազիան, իշխանությունը զավթելով, պատրաստվում էր արդեն հակառևոլյուցիոն դիկտատուրա հաստատելու և որպես դիկտատոր առաջադրում էին գեներալ Կոռնիլովին։ Օգոստոսի 25-ին Կոռնիլովն իր զորքերն առաջ շարժեց Պետրոգրադի վրա։

Բայց բոլշևիկների ղեկավարությամբ բանվորներն ու զինվորները ջախջախեցին կոռնիլովյան խռովությունը։ Եվ դա հանդիսացավ որպես փայլուն վկայություն այն բանի, որ բոլշևիկյան պարտիան դարձել էր ռևոլյուցիայի վճռողական ուժը։

«Կոռնիլովշչինայի դեմ մղած պայքարն աշխուժացրեց բանվորների ու զինվորների դեպուտատների արդեն նվաղել սկսող Սովետները, նրանց ազատեց համաձայնողական քաղաքականության գերությունից, նրանց դուրս բերեց ռևոլյուցիոն պայքարի լայն ճանապարհը և նրանց շրջեց բոլշևիկյան պարտիայի կողմը։

Բոլշևիկների ազդեցությունը Սովետներում աճեց, ինչպես երբեք:

Բոլշևիկների ազդեցությունն սկսեց արագ կերպով աճել նաև գյուղում» («Համ. Կ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց», էջ՝ 280, Հայպետհրատ, 1938 թ.):

Սկսեցին երևան գալ դեպքեր, երբ բանվորներն սկսում էին արդեն իրագործել վերահսկողությունն արտադրության վրա, քշում էին կապիտալիստներին և արտադրությունը վարելու գործը հանձնարարում էին բանվորների միջից ընտրած գործադուլային կոմիտեներին:

Խիստ տարածված բնույթ ստացան այն դեպքերը, երբ գյուղացիները գրավում էին կալվածատիրական հողերը և ինքնագլուխ կերպով հերկում էին գրաված հողերը: Մեծ արդյունքներ էր տալիս բոլշևիկյան պրոպագանդան բանակում: Շատ դիվիզիաներում և գնդերում զինվորները վռնդում էին հին հրամանատարներին, ընտրություններին տապալում էին մենշևիկների ու էսերների թեկնածությունները և իրենց ձայները տալիս էին բոլշևիկներին:

Ռևոլյուցիան գնում էր դեպի վերելք: Բանվորներն ու զինվորներն սկսեցին



վտարել մենշևիկներին ու էսերներին Սովետներից, բոլշևիկներին էին ուղարկում որպես իրենց ներկայացուցիչները Սովետների մեջ: Պետրոգրադի Սովետն արդեն գտնվում էր բոլշևիկների մեծ ազդեցության տակ և որն արտահայտվեց հօգուտ բոլշևիկյան գծի: Բոլշևիկների կողմն անցավ նաև բանվորների դեպուտատների Մոսկվայի Սովետը:

«Այս նշանակում էր, որ հաջող ապստամբության համար անհրաժեշտ հիմնական նախադրյալներն արդեն հասունացել էին:

Նորից հերթի դրվեց «Ամբողջ իշխանությունը Սովետների՛ն» լոզունգը:

Բայց սա արդեն իշխանությունը մենշևիկյան-էսերական սովետների ձեռքն անցնելու հին լոզունգը չէր: Ո՛չ,— սա Սովետների ապստամբության լոզունգն էր ընդդեմ ժամանակավոր կառավարության, երկրում ամբողջ իշխանությունը բոլշևիկների կողմից ղեկավարվող Սովետների ձեռքը հանձնելու նպատակով»: («ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց», էջ 281—282, Հայպետհրատ, 1938 թ.):

Սեպտեմբերի 12-ի ու 14-ի միջև Լենինը

կրում էր Կենտրոնական Կոմիտեին ուղղած իր նամակներում.

«Մեծամասնություն ստանալով երկու մայրաքաղաքների Բանվորների և Զինվորների Դեպուտատների Սովետներում՝ բոլշևիկները պետական իշխանությունը կարող են և պետք է վերցնեն իրենց ձեռքը» (Լենին, Երկեր, հ. XXI, էջ 330, ռուս. հրատ.):

Հոկտեմբերի 7-ին, երեկոյան, Լենինը ժամանեց Պետրոգրադ: Իր՝ Պետրոգրադ ժամանելու հաջորդ օրը Լենինը հանդիպեց ընկեր Ստալինին:

Հոկտեմբերի 10-ին, երեկոյան, կայացավ պարտիայի Կենտկոմի նիստը:

Այդ նիստում Լենինը զեկուցումով հանդես եկավ ընթացիկ մոմենտի առթիվ: Լենինն ասում էր իր զեկուցման մեջ, որ մոտ է վճռական մոմենտը, որ քաղաքականապես գործը միանգամայն հասունացել է բոլշևիկների կողմից իշխանությունը վերցնելու համար և որ ամբողջ գործն այժմ ապստամբության տեխնիկական նախապատրաստումն է: Լենինի առաջարկած բանաձևի մեջ ասված էր. «Այդպիսով ընդունելով, որ զինված ապստամբությունն անխուսափելի է և լիովին հասունացել է,



ԿԿ-ն պարտիայի բոլոր կազմակերպություններին առաջարկում է սրանով ղեկավարվել ու այս տեսակետից քննարկել և լուծել բոլոր պրակտիկ հարցերը...»: (ԼԵՆԻՆ: Երկեր, հ. XXI, էջ 330, ռուս. հր.):

Դա համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող մի որոշում էր: Այդ որոշման դեմ դուրս եկան դավաճաններ Կամենևը և Զինովևը, որոնք ձգտում էին խանգարել իշխանությունը բանվորների ձեռքն անցնելուն: Տրոցկին առաջարկեց ապստամբությունը չսկսել, քանի դեռ չի բացվել Սովետների II համագումարը, «որ նշանակում էր— ապստամբության գործը ձգձգել, վաղօրոք բացահայտ դարձնել ապստամբության պայմանի օրը, այդ մասին նախազգուշացնել ժամանակավոր կառավարությանը»: («ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց», էջ 285, Հայպետհրատ, 1938 թ.):

Բայց հակառակ դավաճանների ելույթներին, Կենտկոմի նիստում որոշվեց ամենամոտիկ օրերում սկսել զինված ապստամբություն:

Հոկտեմբերի 12-ին Պետրոգրադի Սովետի Գործկոմն իր գաղտնի նիստում որոշեց

ստեղծել Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե: Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ցուցումով ստեղծված այդ կոմիտեն դարձավ ապստամբության ղեկավար շտաբը: Մշակվեց ապստամբության մանրամասն պլանը, որի հիմքը կազմեցին Լենինի ցուցումները՝ նրա «Մարքսիզմ և ապստամբություն» նամակում:

Հոկտեմբերի 16-ին, Լենինի առաջարկությամբ, գումարվեց պարտիայի Կենտկոմի ընդլայնված նիստը՝ տեղերի, պրոֆմիությունների, բոլշևիկյան պարտիայի Պետրոգրադի և Մոսկվայի կոմիտեների ռազմական կազմակերպությունների ներկայացուցիչների մասնակցությամբ: Այդ նիստում նորից ապստամբության դեմ դուրս եկան դավաճաններ Կամենևը և Զինովևը, որոնք վճռական հակահարվածի հանդիպեցին: Ընկեր Ստալինը, մերկացնելով նրանց դավաճանական առաջարկը, մատնանշում էր. «Այն, ինչ որ Կամենևն ու Զինովևն են առաջարկում, օբյեկտիվորեն հանգեցնում է՝ հակառևոլյուցիայի համար կազմակերպվելու հնարավորության»:

Պարտիայի Կենտկոմի ընդլայնված նիստը հաստատեց այն բանաձևը, որը Լենինն



էր առաջարկել: Կենտկոմի դռնփակ նիստում ընտրվեց Պարտիական Կենտրոն ընկեր Ստալինի գլխավորությամբ՝ ապստամբությունը ղեկավարելու համար: Այդ միջոցին Կամենևն ու Զինովևը դիմեցին անլուր դավաճանության: Նրանք մենշևիկյան «Новая жизнь» լրագրին դիմեցին մի նամակով, որի մեջ բացահայտեցին ապստամբության պլանը և ժամկետները: Այդ նամակը տպվեց հոկտեմբերի 18-ին «Новая жизнь» լրագրում և հակառևոլյուցիան այդպիսով նախազգուշացվեց բոլշևիկների կողմից պատրաստված ապստամբության մասին: Հակառևոլյուցիան սկսեց շտապ կերպով միջոցառումներ պատրաստել ապստամբությունը ճնշելու համար: Հոկտեմբերի 19-ին զորքերը ֆրոնտից Պետրոգրադ կանչվեցին, ուժեղացվեց Պետրոգրադի կայազորը, միլիցիայի հետ միաձուլեցին սպայական ընտիր զորամասերը, վճռվեց Սովետների համագումարից մի օր առաջ հարձակվել Սմոլնու վրա, որտեղ գտնվում էր բոլշևիկների պարտիայի Կենտրոնական Կոմիտե:

Ապստամբության ղեկավարման պարտիական կենտրոնը կազմակերպեց Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտեյի կոմիսարների

ուղարկում Պետրոգրադի կայազորը, կոմիսարներ, որոնց խնդիրներից մեկն էր գնդերը պատրաստել՝ ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի ազդանշանով հանդես գալու համար: Կոմիսարներ ուղարկվեցին նաև զինվորական օկրուգի շտաբը: Հոկտեմբերի 23-ի առավոտյան, Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի դիմումի մեջ հայտնվեց ի գիտություն ընդհանուրի, որ կոմիսարները, որպես Սովետի ներկայացուցիչներ, անձեռնմխելի են և որ կոմիսարներին ընդդիմադրելը՝ բանվորների և զինվորների դեպուտատների Սովետին ընդդիմադրություն ցույց տալ է: Եռանդուն նախապատրաստություն էր տեսնվում ապստամբության համար նաև ֆաբրիկաների ու գործարանների բանվորների մեջ: Նշանակվեց ապստամբության օրը:

Բայց «Պետրոգրադի Սովետի նիստում Տրոցկին, պարծենալով, թշնամուն հայտնեց ապստամբության ժամկետը, այն օրը, որ բոլշևիկները նշանակել էին ապստամբությունն սկսելու օր: Կերենսկու կառավարությանը զինված ապստամբությունը վիժեցնելու հնարավորություն չտալու համար պարտիայի ԿԿ-ն որոշեց ապստամբությունն սկսել ու կատարել նշված ժամ-



կետից շուտ և Սովետների II համագումարի բացումից մեկ օր առաջ», («Համ. Կ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց», էջ 287—288, Հայպետհրատ, 1938 թ.):

Թշնամիները, որոնք առաջնորդվելով այն հաշվով, թե բոլշևիկներն ապստամբության սկիզբը նշանակում են հոկտեմբերի 25-ին, շտապեցին կանխել բոլշևիկների ելույթը:

Հոկտեմբերի 23-ին Կերենսկին օկրուգի շտաբի գաղտնի նիստ կազմակերպեց, որտեղ վճռվեց բոլշևիկների դեմ գործողություններ սկսել հոկտեմբերի 24-ին:

Այդ օրը առավոտյան, ժամի մոտավորապես 6-ին, բոլշևիկների պարտիայի կենտրոնական օրգան «Рабочий путь» թերթի խմբագրություն մտան յունկերները ժամանակավոր կառավարության օրդերով հանդերձ՝ թերթը փակելու և խմբագրին ձերբակալելու համար: Երբ այդ մասին հաղորդեցին ընկեր Ստալինին, նա կարմիր-գվարդիականներ և ռևոլյուցիոն զինվորներ ուղարկեց այնտեղ, և յունկերները դուրս վռնդվեցին: «Առավոտյան ժամի 11-ին մոտ լույս տեսավ «Рабочий путь»-ը

այսպիսի կոչով՝ տապալել ժամանակավոր կառավարությունը: Միաժամանակ ապստամբության պարտիական կենտրոնի ցուցումով՝ շտապ կարգով Սմոլնու մոտ հավաքվեցին ռևոլյուցիոն զինվորների ու կարմիր-գվարդիականների ջոկատները:

Ապստամբությունն սկսվեց»: («Համ. Կ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց», էջ՝ 288, Հայպետհրատ, 1938 թ.):

Ժամի 5-ի մոտերն ապստամբները գրավեցին հեռագրատունը և ծածկագրված հաղորդագրություն տարածվեց այն մասին, որ ապստամբությունն արդեն տեղի է ունենում:

Գիշերը Լենինը, գրիմավորված, ժամանեց Սմոլնի, որտեղ նրան դիմավորեց ընկեր Ստալինը և հաղորդեց ձեռք առնված միջոցառումների մասին:

Ապստամբությունը զարգանում էր: Գիշերվա ժամի 1-ից 25 րոպե անց գրավվեց փոստատունը, ժամի 2-ին գրավվեցին կայարանները, էլեկտրոկայանները, անջատվեց լույսը Ձմեռային պալատում, առավոտյան ժամի 6-ին գրավվեց Պետական բանկը, առավոտյան ժամի 7-ին գրավվեց Դվորցովի կամուրջը, որի մոտ ապրում



էր Կերենսկին: Կերենսկին նստելով ամերիկյան ռազմակցորդի կողմից նրան ուղարկած մեքենան, փախավ Ցարսկոյե-Սելո, իսկ այնտեղից՝ ֆրոնտ, Պսկով:

Հոկտեմբերի 25-ի առավոտյան ժամի 11-ի մոտերը, ամբողջ քաղաքում արդեն փակցվեց Լենինի գրած «Ռուսաստանի քաղաքացիներին» վերտառությամբ դիմումի տեքստը, որով ազդարարվում էր.—

«Ժամանակավոր կառավարությունը տապալված է: Պետական իշխանությունն անցել է Պետրոգրադի պրոլետարիատի և կայազորին գլխավորող՝ բանվորների և զինվորների դեպուտատների Պետրոգրադի Սովետի օրգան Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի ձեռքը:

Այն գործը, որի համար կռվում էր ժողովուրդը — դեմոկրատական հաշտության անհապաղ առաջարկում, հողի նկատմամբ կալվածատիրական սեփականության վերացում, բանվորական վերհսկողության արտադրության վրա, սովետական կառավարության ստեղծումն,— այդ գործն ապահովված է:

Կեցցե՛ զինվորների, բանվորների և գյուղացիների ռևոլյուցիան»: (Լենին:

Երկ. հ. XXII, էջ 3, Հայպետհրատ, 1932 թ.):

Հոկտեմբերի 25-ի լույս 26-ի գիշերը ռևոլյուցիոն բանվորների, զինվորների ու մատրոսների գրոհով վերցվեց Ձմեռային պալատը, և ժամանակավոր կառավարությունը ձերբակալվեց:

«Զինված ապստամբությունը Պետրոգրադում հաղթեց»: («ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց» էջ 288: Հայպետհրատ. 1938):

Հոկտեմբերի 25-ի երեկոյան ժամի 10-ն անց 45 րոպե բացվեց Սովետների համառուսաստանյան II համագումարը, որտեղ ճնշող մեծամասնությունը բոլշևիկներն էին կազմում:

Համագումարը կոչ ուղղեց, որի մեջ ասված էր.

«Հենվելով բանվորների, զինվորների և գյուղացիների հսկայական մեծամասնության կամքի վրա, հենվելով Պետրոգրադում տեղի ունեցած՝ բանվորների և կայազորի հաղթական ապստամբության վրա, Համագումարն իր ձեռքն է վերցնում իշխանությունը»:

Սովետների II համագումարն ընդունեց



հաշտության վերաբերյալ դեկրետը, հողի վերաբերյալ դեկրետը և կազմեց առաջին սովետական կառավարություն— Ժողովրդական Կոմիսարների Սովետը, որն ամբողջովին կազմված էր բոլշևիկներից:

Ժողկոմսովետի նախագահ ընտրվեց Լենինը, ազգությունների գործերի նախագահ— ընկեր Ստալինը, որը Լենինի հետ միասին ոգեշնչեց ու կազմակերպեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի համաշխարհային-պատմական հաղթանակը:

---

# ԻՆՉՊԵՍ ԸՆԴԱՐՁԱԿՎԵՑ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ

«...Ինչպես տեսնում էք, կապիտալիստական աշխարհը վերջին ժամանակներս ստիպված եղավ մի քիչ նեղվել և հետ նահանջել...»:

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ

Ցամաքի մեկ վեցերորդ մասի անծայրածիր տարածություններում, Դանուբի տաք ջրերից մինչև Չուկոտյան ծովի սառույցները, Նոր Երկրի սառցադաշտերից մինչև Ամու-Դարիայի շոգակեզ ափերը փռված է Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը:

Սոցիալիզմի վիթխարի երկիրը՝ բոլոր կողմերից շրջապատված կապիտալիստական պետություններով, իր սաղմնավորման շրջանում ենթարկվեց կապիտալիստական



աշխարհի կատաղի հարձակումներին, որը ձգտում էր օտարերկրյա զինված ինտերվենցիայի և սպիտակ-գվարդիական կոնտրռևոլյուցիոն խռովությունների միջոցով խորտակել սովետական իշխանությունը: Հյուսիսի ցուրտ տարածություններն ու հարավի պտղաբեր տափաստանները, արևելքի տայգան ու արևմուտքի արտերը հեղեղվեցին հակառևոլյուցիայի պղտոր ալիքներով: Բայց սոցիալիզմի աշխարհը դիմացավ: Սովետների երիտասարդ ռեսպուբլիկան հաղթեց: Ավելի ու ավելի անառիկ դարձան նրա սահմանները, ամրացան նրա ափերը, լայնացան նրա հորիզոնները: Նրա վրա հպարտորեն ծածանվում է Լենին-Ստալինի կարմիր դրոշը:

Կապիտալիստական աշխարհում փոթորկում է իմպերիալիստական նոր պատերազմի հրդեհը: Բոցավառվում են քաղաքները, խորտակվում է սերունդների աշխատանքը: Բայց էլ ավելի ամրացել ու անխորտակելի է դարձել սոցիալիզմի աշխարհը: Ստալինի մեծ հանճարը պահպանում է Սովետների երկրի խաղաղ ստեղծագործ աշխատանքը, ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունը: Ամեն տարի, ամեն ամիս ու ամեն օր նոր հաստատում են բերում

ընկեր Ստալինի հոյակապ խոսքերին, վորն արտասանված է 18 տարի առաջ.

«Կապիտալիզմի բանակում իշխում են իմպերիալիստական պատերազմները, ազգային ճնշումները, կեղեքումը, գաղութային ստրկությունն ու շովինիզմը: Սովետների բանակում, սոցիալիզմի բանակում ընդհակառակը, մենք ունենք փոխադարձ վստահություն, ազգային հավասարություն, խաղաղ համակեցություն և ժողովուրդների եղբայրական համագործակցություն»: (Ի. Ստալին, «Մարքսիզմը և ազգային-գաղութային հարցը», էջ 124, Մոսկվա, 1939):

Սովետական հերոսական ժողովուրդը Լենինի—Ստալինի գլխավորությամբ, նոր տասնյակ միլիոնավոր աշխատավորների ազատագրեց կապիտալիստական լծից: Աճում, ամրանում ու լայնանում է հզոր Սովետական Միությունը: Սովետական երկրի ժողովուրդները հպարտությամբ են հետ նայում իրենց անցած ճանապարհին: Հոկտեմբերյան տարեդարձերը վեր են խոյանում իբրև հսկա նշաններ բոլշևիկների պարտիայի փառապանծ ճանապարհին:



## 7 նոյեմբերի 1918 թվի

Ծանր պայմաններում է դիմավորում Երիտասարդ Սովետական Ռեսպուբլիկան իր առաջին տարեդարձը: Սպիտակ-գվարդիական ապստամբականների ու ինտերվենցիայի օղակն ընդգրկել էր երկիրը բոլոր կողմերից: Ուկրաինայում, Բելոռուսիայում, Մերձբալթիկում տիրություն էին անում գերմանական իմպերիալիստները, Հյուսիսում—Արխանգելսկում և Մուրմանսկում՝ անգլո-ֆրանսիացիները, Դոնում՝ Կրասնովի սպիտակ-կազակային զորամասերը, Հյուսիսային Կովկասում՝ Դենիկինի «կամավորական բանակի» սպայական և կազակային գնդերը, Միջին Ասիայում՝ սպիտակ-գվարդիական բանդաները, Պրիմորյեյում՝ ճապոնացիները, Սիբիրում՝ Կոլչակը:

Սովետական ռեսպուբլիկան կտրված էր Ուկրաինայի, Կուբանի, Սիբիրի հացից, Դոնեցի ածխից, մետաղից, կովկասյան նավթից, միջին-ասիական բամբակից: Սովետական ռեսպուբլիկան կտրված էր համարյա բոլոր ծովերից: Նրան մնացել էին 2 ծովափի շերտեր միայն՝ Ֆիննական ծոցը Լենինգրադի մոտ և Հյուսիսային Կաս-

պին՝ Աստրախանի մոտ: Բայց Կասպից ծովից ելք չկար դեպի օվկիանոս, իսկ Բալթիկ ծովի ելքը փակել էր անգլիական նավատորմը:

Սովետական իշխանությունը պահպանվում էր մոտ 2,5 միլիոն քառակուսի կիլոմետր տերիտորիայի վրա: Մինչև ռևոլյուցիան այդ տերիտորիայի վրա ապրում էին 65—70 միլիոն մարդ:

Իմպերիալիստական բլոկադայի ճիրաններում սեղմված, հացից, վառելանյութից, հումքից զրկված, Սովետական ռեսպուբլիկայում իշխում էր սովը, կանգ էին առել համարյա բոլոր գործարանները, մարել էին հնոցները: Սակայն չմարեց ժողովրդի ռևոլյուցիոն ոգին, ոչ մի բոպե կանգ չառավ բոլշևիկյան պարտիայի աշխատանքը: «Սոցիալիստական հայրենիքը վտանգի մեջ է»— կոչ արձակեց սովետական կառավարությունը:

1918 թվականի հոկտեմբերի 3-ին Վլադիմիր Իլյիչ Լենինը գրեց.

«...Այժմ մեզ պետք է երեք միլիոնանոց բանակ: Մենք դա կարող ենք ունենալ: Եվ մենք դա կունենանք...:

Տասնապատկենք ուրեմն մեր ջանքերը:

Թող սա դառնա պրոլետարիատի հոկ-



տեմբերյան մեծ ռևոլյուցիայի տարեդարձի լոզունգը»:

Ի պատասխան բոլշևիկյան պարտիայի կոչի՝ ժողովրդի բոլոր լավագույն զավակները գնացին Կարմիր Բանակի շարքերը փրկելու դեռ նոր ձեռք բերված սոցիալիստական հայրենիքը: Ռազմաճակատ գընաց կոմունիստական պարտիայի և կոմերիտմիության ամբողջ կազմի կեսը:

7 նոյեմբերի 1919 թվի

Շատ ծանր փորձություններ մնացին ետ: Շատ փառապանծ հաղթանակներ տարավ Կարմիր Բանակը: Ուրալում ջախջախվեց Կոլչակը: Լենինգրադից հետ շպրտվեց Յուդենիչը, որն արդեն կանգնած էր հենց Պուլկովյան բարձունքների մոտ: Շնորհիվ ընկեր Ստալինի ռազմագիտական հանճարեղ մտահղացման Օրյոլի և Վորոնեժի մոտ վճռական ճակատամարտերում ջախջախվեցին և հարավ շպրտվեցին Դենիկինի բանակները: Սովետական իշխանությունը հաղթանակեց Ուրալում: Վոլգան համարյա իր ամբողջ երկարությամբ դարձավ սովետական ազատ գետ: Սովետական երկրի վզին փաթաթված սպիտակ ռազմաճակատների օղակը շատ տեղերում պատռված էր:

Ավելի ու ավելի հաղթական էր դառնում սովետական իշխանության պայքարը: Անդիմադրելիորեն առաջ էին գնում կարմիր գնդերը Հարավի տափարակներով, Հյուսիսի անտառներով, Սիբիրի տայգաներով:

**7 նոյեմբերի 1920 թվի**

Անցավ քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում տարած վճռական հաղթանակների տարին: Վերացվեցին Դենիկինի բանակները: Խաղաղ Դոնն ու սրընթաց Կուբանը, Դնեպրի արգավանդ ափերը, Դոնբասի ու Կրիվոռոժյեյի հանքահորերն ու գործարանները, Բաքվի ու Գրոզնիի նավթահանքերը դարձան սովետական: Արևմուտքում հետ շպրտվեցին սպիտակ-լեհերի հարձակումները: Վերջ տրվեց ինտերվենցիային Հյուսիսում: Բարենցյան ծովի հորիզոնի հետևն անհայտացան անգլիական վերջին նավերը: Սովետական իշխանությունը հաղթանակեց Սիբիրում: Երկրի հիմնական շտեմարաններն ու ածխա-մետալուրգիական բազան ազատագրվեցին: Սովետական երկիրը ելք ստացավ դեպի արտաքին շուկաները: Անգլիան, Ֆրանսիան և Իտալիան ստիպված եղան վերացնելու Սովետական Ռուսաստանի բլոկադան:



1920 թվականին որոշվեցին Սովետների երկրի սահմաններն արևմուտքում: Խաղաղության դաշնագրեր կնքվեցին Ֆինլանդիայի, Էստոնիայի, Լատվիայի, Լիտվայի և Լեհաստանի հետ: Սակայն Լիտվայի հետ որոշված սահմանը փաստորեն չիրականացվեց, որովհետև պանական Լեհաստանը բռնի կերպով գրավեց Վիլնոն և Վիլնոյի մարզը, որոնք սովետական կառավարությունը կամավոր կերպով զիջել էր Լիտվային: Այս պատճառով Սովետական Ռուսաստանն ու Լիտվան ընդհանուր սահման չունեին: Վերջնականապես չսահմանվեց նաև հարավ-արևմուտքի սահմանը՝ Ռումինիայի կողմից Բեսարաբիան ուխտադրուժ կերպով գրավելու հետևանքով:

Հարավում և արևելքում կռիվը շարունակվում էր: Հոկտեմբերյան տարեդարձի օրերին—1920 թվի նոյեմբերի 6—7-ին սկսվեց Պերեկոպի անմատչելի ամրությունների հերոսական գրոհը, ամրություններ, որոնք փակում էին Ղրիմի ճանապարհը, որտեղ դեռ նստած էր բարոն Վրանգելը սպիտակ բանակների մնացորդներով և սպառնում էր Կարմիր Բանակի և ամբողջ Սովետական Ուկրաինայի թիկունքին: Անդրկովկասի մի մասը դեռևս

գտնվում էր հակահեղափոխականների՝ վը-
րացական մենշևիկների և հայկական դաշ-
նակների ձեռքին: Հեռավոր Արևելքում տե-
րություն էին անում ճապոնացիներն ու նը-
րանց համհարզները՝ սպիտակ գեներալները:

## 7 նոյեմբերի 1921 թվի

Անցավ կռվի մի տարի էլ: Կարմիր Բա-
նակը ճեղքեց Պերեկոպի ամրոցները և ան-
ցավ Սիվաշի նեխած ջրերով: Առ 16 նո-
յեմբերի 1920 թվի, սովետական դարձավ
ողջ Ղրիմը: Հարավային ռազմաճակատը
վերացավ: Շուտով սովետական իշխանու-
թյան կարմիր դրոշը ծածանվեց նաև Թիֆ-
լիսի ու Երևանի վրա:

Սովետական իշխանությունը տոնեց ին-
տերվենցիոն բանակների և բուրժուա-կալ-
վածատիրական–սպիտակ-գվարդիական հա-
կահեղափոխության միացյալ ուժերի նկատ-
մամբ տարած պատմական հաղթանակը:

Հեռավոր Արևելքում էին միայն պահ-
պանվում ճապոնական ինտերվենտների
զորքերը:

Սովետական Ռուսաստանի ամբողջ տեր-
տորիայում (բացի Հեռավոր Արևելքից),
Ուկրաինական, Բելոռուսական, Ադրբեջա-
նական, Վրացական, Հայկական սովետա-



կան ռեսպուբլիկաներում սկսվեց սոցիա-
լիստական խաղաղ շինարարությունը:

## 7 նոյեմբերի 1922 թվի

Ինտերվենտներից և սպիտակ-գվարդիա-
կաններից մաքրված էին Անդրբայկալի լեռ-
ներն ու Պրիմորյեի բլրակները: Հոկտեմ-
բերի հինգերորդ տարեդարձից երկու շա-
բաթ առաջ Կարմիր Բանակը մտավ Վլա-
դիվոստոկ, մեր Հեռավոր Արևելքի՝ սովե-
տական յուրաքանչյուր պատրիոտի սրտին
այնքան մոտիկ քաղաքը: Ճապոնական ծո-
վի թարմ քամուց ուրախ ծածանվեց կար-
միր դրոշակը: Սովետական իշխանությունն
ընդմիշտ տիրապետեց աշխարհի մեկ վեց-
երորդ մասին, 21,2 միլիոն քառակուսի
կիլոմետր տերիտորիային: Սովետական մի
փոքրիկ հողամասում միայն՝ Հյուսիսա-
յին Սախալինում դեռևս մնում էին ճապո-
նական օկուպանտները:

## 7 նոյեմբերի 1923 թվի

Առաջին տարեդարձը, որ սովետական
ռեսպուբլիկաները տոնում են միավորված
Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլի-
կաների Հզոր Միության մեջ՝ սովետական
ժողովուրդների կամավոր պետական միա-

վորման, որ ստեղծված է Լենինի և Ստալինի առաջարկությամբ: Սովետական Միության մեջ մտան չորս սովետական սոցիալիստական ռեսպուբլիկա՝ Ռուսաստանի ֆեդերացիան, Անդրկովկասի ֆեդերացիան, Ուկրաինական և Բելոռուսական ռեսպուբլիկաները:

## 7 նոյեմբերի 1924 թվի

ՍՍՌՄ և համայն աշխարհի աշխատավորները Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիայի տարեդարձը տոնեցին մռայլած հոգով. դա Հոկտեմբերի առաջին տարեդարձն էր ամբողջ աշխարհի աշխատավորների մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի մահվանից հետո:

Լենինի դրոշը բարձր պահեց և առաջ տարավ նրա հավատարիմ զինակից և բարեկամ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը:

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկների Միությունն աճում ու ամրանում է ընկեր Ստալինի հանճարեղ առաջնորդությամբ:

Արդեն 1924 թվին միութենական ռեսպուբլիկաների թիվը հասավ վեցի: Միութենական ռեսպուբլիկաներ դարձան արևվային Ուզբեկստանը և [illegible] Թուրքմենստանը:



## 7 նոյեմբերի 1925 թվի

Սովետական իշխանության ամրապնդման և ստալինյան արտաքին քաղաքականության հաղթանակների հետևանքով ճապոնացիք ստիպված եղան մաքրելու իրենց կողմից զավթած Սովետական Հեռավոր Արևելքի վերջին անկյունը. Սովետական Միությանը վերադարձվեց Հյուսիսային Սախալինը:

Պինսկի ճահիճներից մինչև Կամչատկայի հրաբուխները, Կարայի ծովից մինչև Կարակումի այրող ավազները եռաց սոցիալիզմի կառուցումը՝ անընդհատ աճելով ու լայնանալով:

## 7 նոյեմբերի 1929 թվի

Անցավ մեծ բեկման տարին սոցիալիզմի շինարարության բոլոր ճակատներում, ստեղծարար աշխատանքի տարին: Բոլշևիկների ղեկավարությամբ երկիրը փայլուն հաջողությամբ հաղթահարում էր անցյալից ժառանգած հետամնացությունն ու անկուլտուրականությունը: Փայլուն հաղթանակ տարավ երկրի ստալինյան ինդուստրա-

ցումը։ Սոցիալիզմը հսկայական հաջողություններ ունի արդյունաբերության մեջ։ Սոցիալիստական ճանապարհի վրա է անցնում գյուղատնտեսությունը. սկսվում է կոլտնտեսային մասսայական շարժումը։ Մեր անընդգրկելի հայրենիքի բոլոր ամենահեռավոր ծայրամասերը ներգրավված են սոցիալիստական շինարարության ընդհանուր շեշտակի հոսանքի մեջ։ Օրինակ կարող է ծառայել Տաջիկստանը։ 1929 թվին նա վերակազմվում է իբրև Սովետական Ռեսպուբլիկա։ Այս երկիրը, որ իր տերիտորիայի մեծ մասում, առաջ չուներ ո՛չ տրանսպորտ, արդյունաբերություն, ո՛չ ճանապարհ, ո՛չ քաղաք, Բուխարայի էմիրի նախկին կալվածքը, իբրև հավասար անդամ մտավ միութենական սովետական ռեսպուբլիկաների համերաշխ ընտանիքի մեջ։ Բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ Տաջիկական ՍՍՌ մի քանի տարում միթխարի ճանապարհ կտրեց միջնադարյան հետամնացություններից ու գաղութային կեղեքումից դեպի առաջավոր, սոցիալիստական կուլտուրա՝ ձևով ազգային բովանդակությամբ սոցիալիստական, դեպի սոցիալիստական ժողովրդական անտեսության ստեղծումը։



## 7 Նոյեմբերի 1937 թվի

Հաղթանակած սոցիալիզմի Ստալինյան Կոնստիտուցիայում գրանցված լենինյան-ստալինյան հաղթանակների հետևանքով միութենական ռեսպուբլիկաների ընտանիքը մեծացավ և հասավ տասնմեկի։ Իբրև միութենական ռեսպուբլիկաներ են վերակազմված Կազախստանը, Կիրգիզիան, Ադրբեջանը, Վրաստանը և Հայաստանը։ Բոլոր 11 միութենական ռեսպուբլիկաները 1937 թվականը՝ երկրորդ հնգամյակի վերջին տարին մտան նոր գործարաններով, կառուցված համաշխարհային տեխնիկայի վերջին խոսքով, հզոր էլեկտրոկայաններով, հարյուրավոր ու հազարավոր ՄՏԿ-ներով, ծաղկափթիթ կոլխոզներով ու սովխոզներով։

Հոկտեմբերյան շնորհավորական ռադիոգրամները 1937 թվին ստացան մինոր հասցե ևս. սովետական ժողովուրդը դրա միջոցով կապ է պահպանում սովետական փոքրիկ գաղութի հետ՝ պապանինյան քառյակի հետ, որոնք կարմիր դրոշը Ստալինի պատկերով կանգնեցրել են Արկտիկայի կենտրոնի համր սառցաբլուրների վրա։ Հյուսիսային բևեռը դարձավ սովետական։

Անցած տարիներին Միության քարտեզի

վրա են գծված Կարայի ծովի նոր հայտնագործված կղզիներ՝ Վիզեն, Արկտիկական ինստիտուտը, «Իզվեստիան»: Սովետական մարդիկ հետազոտել են Հյուսիսային երկրի արշիպելագը: Լայնորեն ծավալվել են տնտեսական աշխատանքներ հյուսիսը նվաճելու ուղղությամբ: Ծանր սառույցը համարձակ ջարդում են հզոր սառցահատները: Սովետական նավերը գնում են բոլշևիկների բացած Հյուսիսային ծովային ճանապարհով: Բևեռային գիշերվա մեջ փայլում են սոցիալիստական կառուցումների լույսերը:

## 7 նոյեմբերի 1938 թվի

Պողպատի պես ամուր են Սովետական երկրի սահմանները: Նրանց երկարությունը 60 հազար կիլոմետր է՝ մեկ ու կես անգամ ավելի, քան երկրագնդի շրջագիծը հասարակածով: Եվ այս ամբողջ հսկայական գծի վրա, որ գնում է ծովերի ու օվկիանոսների ափերով, լեռներով ու հովիտներով, ճահիճներով ու անապատներով, անտառներով ու գետերով, չկա մի թույլ տեղ, որտեղով թափանցեր թշնամին: Հարյուր յոթանասուն միլիոնանոց սովետական ժողովուրդը արթուն պաշտպանում



է իր սոցիալիստական հայրենիքը: Մեր սահմանների ամրությունը սվինով շոշափելու ամեն մի փորձ, կարող է հանգել միայն մի բանի՝ թշնամու սվինը կծռվի ուռենու ճիպոտի պես հանդիպելով սովետական սահմանների երկաթբետոնին: Այս բանն իրենց վրա փորձեցին ճապոնական իմպերիալիստները, որոնք 1938 թվին փորձեցին սովետական տերիտորիայից ռազմագիտական կարևոր դիրքեր գրավել Խասան լճի մոտ:

## 7 նոյեմբերի 1939 թվի

Հոկտեմբերի քսաներկուերորդ տարեդարձը դիմավորում է սովետական ժողովուրդների մեծացած ընտանիքը: Կարմիր Բանակը Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի տասներեք միլիոն քաղաքացիների ազատագրել է պանական լծից: Սովետական Ուկրաինան դարձել է համարյա քառասուն միլիոն բնակչությամբ պետություն, Սովետական Բելոռուսիան՝ տաս միլիոն: Դեպի հեռու արևմուտք տարածվել է ՍՍՌՄ-ի սահմանները: Կատաղի Սանի, Արևմտյան լայն Բուգի, Նարևի ճահճոտ ափերի և Կարպատների անտառապատ գագաթների վրա տնկված են սովետական հաղթական կարմիր դրոշները: Անհայտացավ նախկին հարևան՝ պանական Լե-

հատտանը: Սովետական Միությունը նոր հարևաններ ունի, որոնք առաջ ընդհանուր սահմաններ չունեին նրա հետ՝ Գերմանիան, Հունգարիան:

## 7 նոյեմբերի 1940 թվի

Մի տարի էլ անցավ՝ իրադարձությունների հարստությամբ և նրանց նշանակությամբ ուրիշ տասնամյակների հավասար տարի: Մի անգամ էլ համայն աշխարհի առջև ապացուցված է ստալինյան արտաքին քաղաքականության իմաստունությունը, Կարմիր Բանակի հզորությունը, սովետական ժողովրդի հայրենասիրությունը, սովետական գաղափարների մոտիկ լինելը բոլոր երկրների աշխատավորների սրտին:

Քառասուն աստիճանի սառնամանիքները, անտառային անանցանելի խորխորատները, նույնիսկ ձմեռը չսառող հեղեղատները, բնական արգելքներն ու պողպատյա և բետոնե ամրոցներն էին ծառայած Կարմիր Բանակի մարտիկների առջև Կարելյան պարանոցում 1940 թվականին: Ֆիննական սպիտակ-գվարդիականները, թաղնված «Մաններհայմի գծի» ամրոցների հետևը, փորձում էին կատարել իրենց լոնդոնյան և փարիզյան տերերի պատվերը և սպառնա-



լիք ստեղծել Լենինի քաղաքին: Կարմիր Բանակը մի անգամ էլ ցույց տվեց, որ չկան այնպիսի ամրոցներ, որոնց չկարողանային վերցնել բոլշևիկները: «Մաններհայմի գիծը» ճեղքվեց, Կարելյան պարանոցն ու Վիբորգը դարձան սովետական: Ամբողջովին սովետական դարձավ նաև Լադոգա լիճը, որն առաջ ՍՍՌՄ բաժանում էր Ֆինլանդիայից: Սպիտակ ֆիններին հաղթելու հետևանքով ծնվեց Կարելո-Ֆիննական՝ միութենական տասներկուերորդ ռեսպուբլիկան: ՍՍՌՄ սահմանները հեռացան Լենինգրադից դեպի հյուսիս-արևմուտք, Վիբորգից այն կողմ:

1940 թվին վերացվեց «Բեսարաբական հարցը», որն անլուծելի էր մնացել Բեսարաբիան բոյարական Ռումինիայի կողմից կողոպտվելուց ի վեր: Ռումինական զավթիչներն ստիպված էին Բեսարաբիան վերադարձնել Սովետական Միությանը և նրան հանձնել ուկրաինացիներով բնակեցված Հյուսիսային Բուկովինան: Սովետական նավերը մտան Դանուբի գետաբերանը: ՍՍՌՄ դարձավ դանուբյան պետություն: Ամբողջովին սովետական գետ դարձավ Դնեստրը: Նրա աջ ափն այլևս չի տրորվում ռումինական ժանդարմների կոշիկնե-

րով: Կարմիր Բանակի զորքերը կանգնած են Պրուտի վրա: Հեռու դեպի արևմուտք և հարավ-արևմուտք են առաջացել Սովետական երկրի սահմանները: Դնեստրի և Պրուտի միջև տարածված է սովետական միութենական մի նոր ռեսպուբլիկա՝ Մոլդավական ՍՍՌ:

Սովետական կառավարության եղբայրական օգնության շնորհիվ Լիտվան, Լատվիան և Էստոնիան ազատագրվեցին պլուտոկրատիայի ճնշումից, սպիտակ տեռորի ռեժիմից, որն իշխում էր այս երկրներում քսան երկար տարիների ընթացքում: Ազատագրված ժողովուրդները վերջապես հնարավորություն ստացան ազատորեն արտահայտելու իրենց կամքը: Եվ նրանք միահամուռ կերպով արտահայտվեցին հօգուտ Ստալինի, հօգուտ կոմունիզմի, հօգուտ սովետական իշխանության: Նրանց առաջին խնդրանքն էր իրենց սովետական ժողովուրդների համերաշխ ընտանիքի մեջ ընդունելը: Սովետական Միության մեջ մըտան նոր միութենական ռեսպուբլիկաներ՝ Սովետական Լիտվան, Սովետական Լատվիան, Սովետական Էստոնիան: Սովետական Միության մեջ այժմ կա 16 ռեսպուբ-



լիկա, որոնք զբաղեցնում են 21,6 միլիոն քառակուսի կիլոմետր տերիտորիա:

ՍՍՌՄ, որ Բալթիկական ծովափին մի նեղ շերտ ուներ միայն Ֆիննական ծոցում, այժմ Մերձբալթիկի մի հսկայական շերտ ունի Վիբորգից մինչև Լիբավա: Արևմտյան Դվինան ամբողջովին դարձել է սովետական գետ: Սովետական կղզիների շարքը մտավ մի նոր արշիպելագ՝ Մոոնզունդի կղզիները, ծովածոցերի շարքը՝ Ռիգայի ծովածոցը: Հսկայական չափերով ամրացավ Սովետների երկրի պաշտպանունակությունը: Մի տարում ՍՍՌՄ բնակչությունն ավելացավ կապիտալիստական ստրկությունից ազատագրված 23 միլիոն քաղաքացիներով:

Տասնվեց տարի սրանից առաջ, Լենինի թաղման այս օրերին, ընկեր Ստալինը Սովետների համամիութենական II համագումարում պարտիայի անունից մեծ երդում տվեց. նա երդվեց պատվով կատարել Լենինի բոլոր ավանդները: Ընկեր Ստալինը խոսեց պրոլետարիատի դիկտատուրայի՝ սովետների ռեսպուբլիկայի առաջին և արմատական հիմքի մասին: Ընկեր Ստալինը խոսեց նաև նրա երկրորդ հիմքի՝ մեր երկրի ազգությունների աշխատավորության

դաշինքի մասին։ Ընկեր Ստալինն ասաց․ «Հեռանալով մեզանից, ընկեր Լենինը մեզ ավանդ թողեց — ամրացնել ու ընդլայնել Ռեսպուբլիկաների Միությունը։ Երդվում ենք քեզ, ընկեր Լենին, որ մենք պատվով կկատարենք քո այդ պատվիրանը ևս»։

Եվ բոլշևիկյան պարտիան գործով ապացուցեց իր հավատարիմ լինելը մեծ երդումին։

Հպարտորեն ու հրճվանքով է սովետական ժողովուրդը հետ նայում իր անցյալին, վստահորեն ու համարձակ է նայում նա իր ապագային։

Մեր երկրի ափերը ողողող օվկիանոսների ու ծովերի ջրերն իրենց ալիքների վրա կրում են սովետական Ռազմածովային Նավատորմի ահեղ նավերը։ Ստալինյան հաղթանակների թռչունների սավերը սահում է Նեմանի ու Դանուբի, Ամուրի ու Կոլիմի վրայով, ցամաքային դրահակիր՝ տանկերը ճանապարհ են բացում Պրիմորյեի եղևնիների և Կարպատների կաղնիների միջով։ Երկյուղ ու վարանում չունեն Սովետների երկրի խաղաղ աշխատանքի պաշտպանները։

Կոլխոզների ու սովխոզների դաշտերում, ՄՏԿ-երի աուդիտորիաներում, դպրոցների լուսավոր դասարաններում, ֆաբրիկա-



ների ու գործարանների ընդարձակ ցեխերում, շողեքարշերի տաք հնոցների մոտ, ցերեկ ու գիշեր, Ստալինի ոգեշնչող անունը բերանին, Հայրենիքի բոցավառ սերը սրտում հարյուրհազարներեք միլիոնանոց սովետական ժողովուրդը կոփում է աշխատանքային մեծ պետություն՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության վեհությունն ու փառքը, անպարտելիությունն ու հզորությունը։

---



## ՍՍՌՄ-ՈՒՄ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ XXIII ՏԱՐԵԴԱՐՁԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ ԱՆՀՐԱԺԵՇՏ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱԿԸ

### ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ ՊԱՐՏԻԱՆ— ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ ՈՒ ՂԵԿԱՎԱՐ

1. Վ. Ի. Լենին.—*Պրոլետարիատի խնդիրները տվյալ ռևոլյուցիայի մեջ (ապրիլյան թեզիսներ)*, (*Ընտիր երկեր*, *հատ.* III, *էջ* 333—335):

2. Վ. Ի. Լենին.—*Մարքսիզմը և ապստամբությունը*, (*Նույն տեղը*, *էջ* 499—505):

3. Վ. Ի. Լենին.— *Բ.Զ.Դ. սովետների համառուսական II համագումարը 1917 թ.*



*նոյեմբերի* 7—8 (*հոկտեմբերի* 25—26-)-*ին*, (*Նույն տեղը*, *էջ* 667—677):

4. Վ. Ի. Լենին.—*Բոլշևիկները պետք է գրավեն իշխանությունը*, (*Նույն տեղում*, *էջ* 497—499):

5. Ի. Ստալին.— *Հոկտեմբերյան ռևոլյուցիան և ռուսական կոմունիստների տակտիկան*, («*Լենինիզմի հարցերը*», *էջ* 100—130, 10-*րդ հրատ.*):

6. Ի. Ստալին.— *Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջազգային բնույթը*, («*Լենինիզմի հարցերը*», *էջ* 258—266. 10-*րդ հրատ.*):

7. «*ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց*»: *Գլուխ* 7-*րդ*:

### ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐՆԵՐԸ:

1. Ի. Ստալին.—*Զեկուցում ՍՍՌՄ կոնստիտուցիայի մասին*:

2. Ի. Ստալին.—*Հաշվետու զեկուցում պարտիայի 18-րդ համագումարում ՀամԿ(բ)Պ Կենտկոմի աշխատանքի մասին*:

3. Վ. Մոլոտով.—*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման երրորդ հնգամյա պլանը: Զեկուցում և եզրափակման խոսք ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում*:

4. Կ. Ե. Վորոշիլով.— Ճառ ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում:

5. Մ. Ի. Կալինին.—Ինչ ավեց սովետական իշխանությունն աշխատավորներին, Պետքաղհրատ. 1940:

6. «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացը»: Գլուխ X—XII:

7. Մ. Ռուբինշտեյն.—Երկու սիստեմների տնտեսական մրցումը: Պետքաղհրատ. 1940:

8. Ն. Վ. Ցիցին.—1940 թվի Համամիութենական Գյուղատնտեսական Ցուցահանդեսը: Պետքաղհրատ. 1940:

9. Սոցիալիզմի հաղթանակների թվերը: «Спутник Агитатора» ժուռնալ № 9. 1940:

## ԱՃՈՒՄ ԵՎ ԸՆԴԼԱՅՆՎՈՒՄ Է ՍՍՌՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԴԱՇԻՆՔԸ:

1. Ի. Ստալին.—Հոկտեմբերյան հեղաշրջումը և ազգային հարցը: «Մարքսիզմը և ազգային գաղութային հարցը» գրքում, էջ՝ 69—77: Պետքաղ. սոց. հրատ. 1939:

2. Ի. Ստալին.—Սովետական ռեսպուբլիկների միավորման մասին: Զեկուցում ՍՍՌՄ սովետների առաջին համագումարում: Նույն տեղում՝ էջ՝ 126—133:

3. Վ. Մ. Մոլոտով.—Սովետական Միու-



թյան արտաքին քաղաքականությունը: Ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահի և Արտաքին Գործերի Ժողովրդական կոմիսարի զեկուցումը ՍՍՌՄ Գերագույն Սովետի VII Սեսիայի նիստում 1940 թ. օգոստոսի 1-ին:

4. Գ. Եգորով.—Արևմտյան Բելոռուսիա: Պետքաղհրատ. 1939:

5. Դ. Մին.— Արևմտյան Ուկրաինա: Պետքաղհրատ. 1939:

6. Սովետական Բեսարաբիա և Սովետական Բուկովինա: Պետքաղհրատ. 1940:

7. Կ. Գրիգորյեվ.—Սովետական Լիտվա: Պետքաղհրատ. 1940:

8. Մ. Եֆիմով: Սովետական Էստոնիա: Պետքաղհրատ: 1940:

9. Մ. Մարկով: Սովետական Լատվիա, Պետքաղհրատ: 1940:

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐՁՐ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

1. Վ. Ի. Լենին: Ի՞նչպես կազմակերպել մրցակցությունը: Երկ. հ. XXII, էջ 158—167:

2. Վ. Ի. Լենին: Սովետական իշխանության հերթական խնդիրները: Երկ., հ. XXII, էջ 453—468:

3. Լենինը և Ստալինը աշխատանքի մասին: Ժողովածու: Պրոֆհրատ: 1940:

4. Վ. Ի. Լենին, Ի. Վ. Ստալին: Սոցիալիստական մրցման մասին: Պարտհրատ: 1938 թ.:

5. Ի. Ստալին: Ճառ ստախանովականների Համամիութենական Առաջին խորհրդակցությանը՝ 1935 թ. նոյեմբերի 17-ին:

6. Ի. Ստալին: Հաշվետու զեկուցում պարտիայի XVIII համագումարում՝ Համ. Կ(բ)Պ ԿԿ-ի աշխատանքի մասին. բաժին II:

7. Ն. Մ. Շվերնիկ: Զեկուցում ՀԱՄԿՍ-ի IX պլենումում 1940 թ. հունիսի 25-ին: Պետքաղհրատ: 1940:

8. Ա. Լեոնտյեվ: Սոցիալիստական աշխատանքի մասին: «Большевик» № 13: 1940:

9. Ի՞նչ կտա սովետական ժողովրդին նոր ձևով աշխատելը: Ինչ նստեցին երկրի վրա չվողներն ու գործալիքները: «Спутник агитатора» ժուռնալը, № 13—14: 1940:

10. Ա. Դերկաչ: Թիկունքի բանվորների աշխատանքային հերոսությունը և անձնազոհությունը քաղաքացիական պատե-



րազմի տարիներում: «Исторический журнал» № 7: 1940:

11. Ն. Ս. Խրուշչև: Գյուղատնտեսական պրոդուկտների մթերումների ու գնումների քաղաքականության մեջ փոփոխություններ մտցնելու մասին: Կիևի պարտիական ակտիվի ժողովում 1940 թ. ապրիլի 16-ին արած զեկուցումից: Պետքաղհրատ: 1940:

12. Ն. Անիսիմով: Հանրային սեփականությունը կոլխոզային կարգերի հիմքն է: Պետքաղհրատ: 1939:

13. ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1940 թ. հունիսի 26-ի և հուլիսի 10-ի Հրամանագրերը:

14. Աշխատանքի սոցիալիստական կարգապահության մասին: «Ագիտ-բլոկնոտ» № 19. 1940:

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

1. Վ. Ի. Լենին: Երիտասարդության միությունների խնդիրները: Ճառ ՌԿԵՄ Համառուսաստանյան III համագումարում 1920 թ. հոկտեմբերի 2-ին: Երկ. հ. XXX, էջ 403—417:

2. Վ. Ի. Լենին: Մեծ նախաձեռնություն: Երկ. հ. XXIV, էջ 325—349:

3. Ի. Ստալին: *Ճառ. ՀամԼԿԵՄ ութերորդ համագումարում:*

4. Ի. Ստալին: *Առաջին հնգամյակի հանրագումարները: Լենինիզմի հարցերը, էջ 392—395 (բաժին VII): 11-րդ ռուս. հրատ:*

5. Ի. Ստալին: *Ճառ՝ արտասանած հարվածային կոլտնտեսականների համամիութենական Առաջին համագումարում 1933 թ. փետրվարի 19-ին:*

6. Ի. Ստալին: *Ճառ՝ արտասանած Կրեմլի պալատի Կարմիր Բանակի ակադեմիականների ավարտման առթիվ* (1935 *թ. մայիսի* 4-*ին*):

7. *Ընկ. Իվանովի նամակը և ընկեր Ստալինի պատասխանը: Պետքաղհրատ,* 1940:

8. Մ. Ի. Կալինին: *Կոմունիստական դաստիարակության հարցերը: Պետքաղհրատ:* 1940:

9. Ն. Կ. Կրուպսկայա: *Երիտասարդության մասին:* «Молодая гвардия»: 1940:

10. Ե. Սիտկովսկի: *Անհատական և հանրային շահը սոցիալիստական հասարակության մեջ:* «Спутник агитатора» № 11: 1940:

---

Պատ. խմբագիր՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Սրբագրիչ՝ Հ. ԶՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ

ՎՖ 2411

*Պատվեր՝* 977, *տիրաժ* 7828

*Հանձնված է արտադրության* 26/X 1940 *թ.*

*Ստորագրված է տպագրության* 29/X 1940 *թ.*

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից գիրքերի և ամսագրերի տպարան, Երևան